K. Mat'evosyan, Գրիգոր Ապիրատ Մագիստրոսը եւ նրա տոհմը 11-րդ դարում [Grigor Apirat Magistros and His Clan in the 11th Century], from *Banber Matenadarani*, volume 18 (2008), pp. 67-92, in 27 pdf pages.

**ԿԱՐԵՆ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ**

# ԳՐԻԳՈՐ ԱՊԻՐԱՏ ՄԱԳԻՍՏՐՈՍԸ ԵՒ ՆՐԱ ՏՈՀՄԸ 11-ՐԴ ԴԱՐՈՒՄ

*Բագրատունյաց ժամանակաշրջանի իշխանական տների պատմությունը դեռեւս ամբողջովին չի ուսումնասիրվել: Առավել հայտնին Պահլավունիներն են: 11-12-րդ դդ. մեկ այլ իշխանական տան՝ Հասանյանների կամ Ապիրատյանների վերաբերյալ մինչեւ այժմ կատարված միակ ուսումնասիրությունը պատկանում է Ներսես Ակինյանի գրչին, զետեղված Ներսես Լամբրոնացուն նվիրված մենագրության Գ մասում, որը վերնագրված է «Ազգաբանութիւն Պահլաւունեաց, Հասանեանց, Թոռնիկեանց եւ Հեթումեանց»[1]: Չնայած այս ուսումնասիրության առկայությանը, հետագա շրջանի աշխատություններում Հասանյանները կամ Ապիրատյանները, որպես առանձին իշխանատոհմ, գրեթե անտեսվել են[2]: Որոշ դեպքերում նրանք նույնացվել են Պահլավունիների հետ[3]:*

*Ն. Ակինյանը վերնագրում իշխանական տունը Հասանյան կոչելով տեքստում եւ տոհմածառում նրանց անվանում է Ապիրատյաններ, թերեւս նկատի ունենալով մեծ իշխան Գրիգոր Ապիրատ Մագիստրոսի առանձնահատուկ դերը տոհմի հաստատման գործում: Սակայն բոլորովին վերջերս Գրիգոր Ապիրատի հոր եւ եղբոր մասին ի հայտ եկած մի տեղեկություն փոխում է իրավիճակը եւ թույլ է տալիս նոր մոտեցմամբ քննել ինչպես տոհմի հիմնադրման հարցը, այնպես էլ՝ Գրիգոր Ապիրատի վերելքի մասին Մխիթար Անեցու թողած հայտնի վկայությունը:*

*Մխիթար Անեցու Պատմությունից (ավարտվել է* ***1193*** *թ.), ցավոք, պահ-*

---

[1] **Ն. Ակինյան**, Ներսես Լամբրոնացի, Վիեննա, 1956, էջ 327-457:

[2] Հայ ժողովրդի պատմության ակադեմիական հրատարակության մեջ այս տոհմը հիշատակվում է միայն մեկ անգամ. «Աշոտ Գ-ից սկսած հայ թագավորները սկսեցին ազատների (մանր ազնվականության) միջավայրից առաջ քաշել նոր իշխանական տներ: Աննշան դիրք ունեցող որոշ իշխանական տներ, օրինակ՝ Պահլավունիներն (Աբուղամրենք) ու մասամբ Ապիրատյանները, շուտով բարձր դիրքի տիրացան» (Հայ ժողովրդի պատմություն, հ. 3, Երեւան, 1976, էջ 267): Հետագա շարադրանքում, սակայն, ոչինչ չկա իշխանական տան մասին, չի հիշատակվում անգամ մեծ իշխան Գրիգոր Ապիրատի անունը:

[3] **Ղ. Ալիշան**, Շնորհալի եւ պարագայ իւր, Վենետիկ, 1873, **Լ. Խաչերեան**, Գրիգոր Պահլավունի Մագիստրոս, Լոս Անճելըս, 1987, էջ 20, **Ռ. Մաթեւոսյան**, Բագրատունյաց Հայաստանի պետական կառուցվածքն ու վարչական կարգը, Երեւան, 1990, էջ 175:

*պանվել է միայն սկզբնամասը[4]: 13-րդ դարում Մխիթարի երկից օգտվել են Վարդան Արեւելցին, Մխիթար Այրիվանեցին, Ստեփանոս Օրբելյանը: Հատկապես Վարդանը երբեմն առանձին հատվածներ բառացի արտագրել է Մխիթար Անեցուց եւ այս ճանապարհով մեզ հասցրել այդ հետաքրքրական պատմության առանձին բեկորներ: Մխիթար Անեցու Պատմությունից քաղված հենց այդպիսի մի հատվածում պահպանվել է եզակի վկայություն Ապիրատ մեծ իշխանի մասին: Հատվածը վերաբերում է Գագիկ Ա Բագրատունու (989-1020)[5] մահից հետո գահը ժառանգած նրա ավագ որդու՝ Հովհաննես Սմբատի (1020-1041) եւ վերջինիս կրտսեր եղբոր՝ Աշոտի միջեւ ծագած գահակալական կռիվից հետո տեղի ունեցած մի դեպքի: Ռազմական բախումն ավարտվել էր 1021 թ., երբ Պետրոս Ա կաթողիկոսի (1019-1054)[6] եւ իշխանների միջնորդությամբ կայացած հաշտությամբ որոշվել էր, որ Հովհաննես Սմբատը պետք է թագավորի Անիում ու նրա շրջակայքում, իսկ Աշոտը՝ թագավորության մնացյալ տարածքներում, որը պատմիչները կոչում են «Դրուց աշխարհ»:*

*Վարդան Արեւելցին Մխիթար Անեցուց օգտվելով պատմում է, որ Թալինի ստորոտում գտնվող իր զորակայանում հիվանդ ձեւանալով Աշոտը խաբեությամբ կանչում ու ձերբակալում է Հովհաննես Սմբատին, նրան տալիս Ապիրատ իշխանին, որ սպանի, իսկ սա հոժարակամ նրան տանում է Անիի իր աթոռը, ասելով, որ չի կարող Աստծո օծյալի վրա ձեռք բարձրացնել եւ նրա տեղը դնել մի խելագարի. «Նոյն այրն (իմա՝ Մխիթար Անեցին) ասէ եւ յաղագս Թագաւորին Յովաննիսի, եթէ եղբայր նորա Աշոտ ի յոտս Թալնայ կեղծաւորեալ որպէս հիւանդ մերձ ի մահ, կոչէ զԹագաւորն առ ինքն, փորելով ի սնարիցն կուսէ որոգայթս. եւ այնու ըմբռնեալ՝ տայ ի ձեռս մեծ իշխանին Ապիրատն կոչեցելոյ, սպանանել զնա. եւ նա յօժար կամօք յինքն առեալ տանի դնէ յաթոռ իւր յԱնի, ասելով. Զի՞րդ ձգեցից զձեռս իմ յօծեալ Տեառն, եւ խելագար մի*

---

[4] **Մխիթար Անեցի**, Մատեան աշխարհավէպ հանդիսարանաց, աշխատասիրությամբ *Հ. Մարգարյանի*, Երեւան, 1983 (այսուհետեւ՝ **Մխիթար Անեցի**):

[5] Ըստ Կ. Յուզբաշյանի Գագիկ Ա-ը մահացել է 1017 թ. (**Ê. Þ çáàø ÿí** , Àðì ÿí ñêèå ãî ñó-äàðñòâà ýï î õè Áàãðàòèäî â è Âèçàí òèÿ IX-XI ââ., Ì î ñêâà, 1988, ñ.156).

[6] Գրականության մեջ ընդունված է Պետրոս Գետադարձի մահվան տարեթիվ համարել 1058 թ.: Այն գալիս է Մ. Օրմանյանից, որը տատանվելով տարբեր աղբյուրների հաղորդած 1053 կամ 1054 եւ 1058 թվականների միջեւ, ընտրել է վերջինը (**Մ. Օրմանյան**, Ազգապատում, հ. Ա, Ս. Էջմիածին, 2001, էջ 1460): Սակայն 1053 կամ 1054 թվականի օգտին եղած կռվանները ավելի համոզիչ են (Տե՛ս **Ռ. Վարդանյան**, Հայոց տոնացույցը, Երեւան, 1999, էջ 563, Հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, Ե-ԺԲ դդ. աշխատասիրությամբ *Ա. Մաթեւոսյանի*, Երեւան, 1988, էջ 100, 102): Սամվել Անեցու ժամանակագրության հնագույն օրինակում (1176 թ.) Պետրոսի տարիները հասնում են մինչեւ Հայոց ՇԳ (1054) թվականը (Մաշտոցի անվան Մատենադարան (այսուհետեւ՝ ՄՄ), ձեռ. 5619, էջ 97ա):

եղից ի տեղւոջ սորա»[7]:

Հաջորդ նախադասությունը վերաբերում է Ապիրատ իշխանի զորացմանը, Կեչառիսի վանքը կառուցելուն. «**Զսմանէ** (Ապիրատի մասին – Կ. Մ.) **ասեն յաննշանից մեծացեալ, եւ վասն խելացի եւ առատ ձեռացն մինչեւ լիներ տէր երկոտասան հազար հեծելոց, որ եւ շինեաց զսուրբ ուխտն Կեչառուս**, որպէս Վարհամ իշխանն՝ զՄարմաշէն»[8] (այս եւ հաջորդ մեջբերումներում ընդգծումները մերն են - Կ. Մ.): Անեցի պատմիչի՝ Ապիրատ իշխանի մասին գրած «յաննշանից մեծացեալ» խոսքերը, ուսումնասիրողները, որպես կանոն, վերագրել են նրա տոհմական ծագմանը: Սակայն, ինչպես ստորեւ կտեսնենք, այդ խոսքերը վերաբերում են Գրիգոր Ապիրատին ոչ որպես տոհմապետ, այլ անհատ, որն իր հոր ավագ որդին ու նրա իշխանության ժառանգորդը չլինելով, «ոչ նշանավորներից» առաջադիմել ու հաջողության էր հասել սեփական խելքով ու առատաձեռնությամբ:

Թշնամացած Բագրատունի եղբայրների միջեւ հայտնված մեծ իշխան Ապիրատի արարքը թանկ է նստում իր վրա: Սակայն հետագա անցքերի մասին գրելուց առաջ տեսնենք թե ավելի վաղ շրջանի ինչ փաստեր են հայտնի նրա մասին: Այդպիսիք պահպանվել են վիմագիր արձանագրություններում, ուր իշխանն ի տարբերություն պատմիչների երկերի, հիշատակվում է Գրիգոր անունով եւ **մագիստրոս** պատվաստիճանով: Հնագույն վկայությունը պահպանվել է Արզականի Ս. Ստեփանոս եկեղեցու կառուցող Գորգ (Գէորգ) քահանայի 1001 թ. արձանագրության մեջ, որը 2002 թ. հրատարակել է Գ. Սարգսյանը: Արձանագրության սկզբում Գագիկ Ա թագավորի անունից հետո հիշատակվում է Գրիգորը. «...Ի ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԳԱԳԿԱ ԱՇԽԱՐՀԱԿԱԼԻ, **ԳՐԻԳՈՐԻ ՀԱՅՈՑ ՄԱԳԻՍՏՐՈՍԻ**...»[9]:

Երկրորդ արձանագրությունը գրված է հենց Գրիգորի կողմից, Կեչառիսի վանքի Ս. Գրիգոր մեծադիր եկեղեցու 1003 թ. շինարարական արձանագրության մեջ. «...Ի ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆ ԳԱԳԿԱ ԵՒ Ի ՀԱՅՐԱՊԷՏՈՒԹԵԱՆ Տ(ԵԱՌ)Ն ՍԱՐԳՍԻ, **ԵՍ ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍ**, ՈՐԴԻ ՀԱՍԱՆԱ, ՇԻՆԷՑԻ ԶԷԿԵՂԷՑԻՍ ԻՆՁ Ի ԲԱՐԷԽՈՍՈՒԹ(ԻՒ)Ն ԵՒ ԻՄ ՊԱՏՐՈՆԻՆ ԵՒ ԻՄ ՈՐԴԵԱՅՆ. ՈՐՔ ԸՆԹԵՌՆՈՅՔ ԶԻՍ ՅԱՂԱԻԹՍ ՅԻՇԷՅԷՔ Ի Ք(ՐԻՍՏՈ)Ս ԱՂԱՁԵՄ»[10]:

---

[7] **Վարդան Արեւելցի**, Տիեզերական պատմություն, աշխարհաբար թարգմանությունը, *Գ. Բ. Թոսունյանի*, Երեւան, 2001, էջ 102-103 (այսուհետեւ՝ **Վարդան Արեւելցի**):

[8] **Վարդան Արեւելցի**, էջ 102-103, աշխարհաբարը՝ էջ 139-140:

[9] **Գ. Սարգսյան**, Գրիգոր-Ապիրատ Հասանյան. Հիմնադիր Կեչառիսի վանքի (վիմագրական նոր վկայություն), «Հին Հայաստանի մշակույթը» ժողովածու 12, Երեւան, 2002, էջ 111:

[10] **Ղ. Ալիշան**, Այրարատ, Վենետիկ, 1890, էջ 259, **Գ. Հովսեփյան**, Խաղբակեանք կամ Պռոշեանք Հայոց պատմութեան մէջ, Անթիլիաս, 1969, էջ 159: Արձանագրության թվականի, ինչպես եւ եկեղեցու պատին Գրիգոր Մագիստրոս Պահլավունու անունով արձանագրության

*Հավանաբար Կեչառիսի մոտերքում է եղել Գրիգոր Ապիրատի նստավայր ամրոցը: Վանքից ոչ հեռու, հարավարեւմտյան ուղղությամբ գտնվող «Խաչեր» անվանվող բարձունքի վրա (Կոտայքի թեմի այժմյան առաջնորդարանի շենքի մոտ) բոլորովին վերջերս բացվել են 11-12-րդ դդ. թվագրվող մի ամրոցի ավերակներ: Իսկ այդ վայրից շուրջ 2-3 կմ արեւելք, Թեղենիսի արեւմտյան բազուկներից մեկի հարթ գագաթին, որը տեղացիները կոչում են «Բերդի գլուխ», հայտնաբերվել են մեկ այլ ամրոցի ավերակներ*[11]*:*

*Գրիգոր (Ապիրատ) իշխանի մասին նշում է նաեւ Մխիթար Այրիվանեցին, որն հավանաբար օգտվել է Մխիթար Անեցուց, բայց նաեւ մի լրացուցիչ տվյալ է հայտնում. «Ապիրատ իշխան 12 000 հեծելի (տէր). **սա շինեաց զԿեչառուս եւ եհան զառուն Երեւանայ**»*[12]*: Այրիվանեցին ավելացնում է իշխանի շինարարական ձեռնարկների թիվը, նշելով Երեւանի ջրանցքի շինարարությունը: Այս տեղեկության հիման վրա Երեւանը համարվել է Գրիգոր Ապիրատի տիրույթը*[13]*:*

*Այսպիսով՝ Գագիկ Ա-ի ժամանակ նրա ստորակա գլխավոր իշխաններից մեկն էր Հասանի որդի Գրիգորը, որը մագիստրոսական պատվաստիճան ուներ արդեն 1001 թվականին: Ըստ Հ. Բարթիկյանի, նշված ժամանակաշրջանում մագիստրոսը բյուզանդական արքունիքի կողմից օտարերկրացիներին տրվող ամենաբարձր պատվաստիճանն էր, որը կրողը նաեւ ամենամյա դրամական վարձատրություն էր ստանում*[14]*:*

*Ն. Ակինյանը ենթադրել է, որ Գրիգորը մագիստրոսի պատիվ ստացել է 1001 թ., երբ բյուզանդական Վասիլ Բ կայսրը (976-1025) Հայաստան է եկել*[15]*: Սա միանգամայն հավանական է, քանի որ Դավիթ Կուրապաղատի մահից հետո (1000 թ.) նրա տիրույթները ժառանգած կայսրը, երբ եկավ Հայաստանի արեւմտյան շրջաններ, շրջակայքի մեծ ու փոքր իշխանավորները շտապեցին նրա մոտ եւ զանազան տիտղոսներ ու պատիվներ ստացան: Այս մասին հայտնում է դեպքերին ժամանակակից Ստեփանոս Տարոնեցի Ասողիկը, անվանապես նշելով առավել կարեւորներին*[16]*: Հավանական է, որ հենց այս ժամանակ է*

---

քննությունը տե՛ս **Կ. Մաթեւոսյան**, Հազարամյա Կեչառիսի հիմնադրման պատմությունից. – «էջմիածին», 2004, Ա, էջ 77-91:

[11] **Գ. Սարգսյան, Հ. Մելքոնյան**, Երկու նորահայտ ամրոց Ծաղկաձորում. – «Հայ արվեստ», 2007, թիվ 3-4, էջ 32:

[12] **Մխիթար Այրիվանեցի**, Պատմութիւն Հայոց, Մոսկվա, 1860, էջ 58:

[13] **Թ. Հակոբյան**, Երեւանի պատմությունը, Երեւան, 1969, էջ 212-213:

[14] **Հ. Բարթիկյան**, Հայ-բյուզանդական հետազոտություններ, Երեւան, 2002, էջ 669:

[15] **Ն. Ակինյան**, Գրիգոր Ապիրատ, որդի Հասանայ, Մագիստրոս. – «Ակօս», 1945, 9, էջ 12-13:

[16] Ըստ պատմիչի՝ կայսեր մոտ է գալիս Նփրկերտի ամիրան եւ ստանում «զմաժիստրոսութեան պատիւն», նույնը ստանում է Վրաց Գուրգեն թագավորը, բայց դժգոհ է մնում՝

*մագիստրոսության պատիվ ստացել նաեւ բազմաքանակ հեծելազոր ունեցող Գրիգորը: Բայց որպեսզի նա մագիստրոսության պատվին արժանանար, պետք է ազնվատոհմ լիներ եւ որոշակի դիրք ունենար: Ն. Ակինյանն այստեղ է փնտրում Գրիգորի նաեւ Ապիրատ անվան ծագումը, գրելով. «Անունս կարելի չէ ստուգաբանել հայերէն ապիրատ բառով: Թերեւս աղաւաղուած ձեւն ըլլայ* ***ապիպատ*** *պատուանունին, արտասանուած նախ* ***ապիրպատ****, ապա* ***ապիրատ****, որուն նպաստած կարող է ըլլալ ապիրատ բառը: Բայց թէ Ապիրատ ընդունա՞ծ էր Բիւզանդիոնի արքունիքէն «ապիպատ» տիտղոսը, չէ վկայուած: ...Գրիգոր եւ Ապիրատ մէկ անձնաւորութեան կրած երկանուններն են»[17]:*

*Հայկական աղբյուրներում Ապիրատ անունով հիշատակվող առաջին մարդը Գրիգոր իշխանն է, ուստի այդ տարօրինակ անվան ծագումը հավանաբար կապված է հենց նրա կենսագրության հետ, բայց առայժմ հիմնավոր բացատրություն չունի[18]: Ինչպես տեսանք Կեչառիսում նա իրեն կոչում է «Հասանի որդի Գրիգոր Մագիստռոս» (1003 թ.), Գորգ քահանան նրան անվանում է «Գրիգոր՝ Հայոց Մագիստռոս» (1001 թ.): Ստորեւ կտեսնենք, որ իշխանին Գրիգոր Մագիստրոս անունով է հիշատակում նաեւ նրա դուստրը Տեկորի* ***1042*** *թ. արձանագրության մեջ:*

*Իշխանին միայն Ապիրատ անունով հիշատակող առաջին պատմիչները՝ Մատթեոս Ուռհայեցին եւ Մխիթար Անեցին, իրենց երկերը գրել են իշխանի մահից համապատասխանաբար շուրջ* ***110*** *եւ* ***170*** *տարի անց: Հնարավոր է, որ պատմիչները նախընտրել են իրեն Գրիգոր Մագիստրոս անվանող իշխանի երկրորդ՝ Ապիրատ անունը նշել՝ նույնանուն Գրիգոր Մագիստրոս Պահլավունի*

---

«անարգանս իւր համարեալ զմաժիստռոսութեան պատիւն»: Գագիկ Ա-ն կայսեր մոտ չի գնում՝ «իբրեւ փոքրութիւն համարեալ զգնալն իւր առ նա», բայց նաեւ արգելք չի հանդիսանում, որ իր հպատակները գնան, ինչպես օրինակ իր քրոջ որդի Աբուսահլը (**Ստեփանոս Տարոնեցի Ասողիկ**, Պատմութիւն տիեզերական, ՍՊԲ, 1885, էջ 276-278):

[17] **Ն. Ակինյան**, Ներսես Լամբրոնացի, էջ 373:

[18] Հ. Աճառյանը գրում է. «ԱՊԻՐԱՏ, արդյոք հայերեն ապիրատ «անարդար» բա՞ռն է. եւ ինչպե՞ս կարող էր այսպիսի մի հոռի ածական մարդու անուն դառնալ: Այս անունը գործածական էր մեր մեջ ԺԱ-ԺԳ դարերում» (**Հ. Աճառյան**, Հայոց անձնանունների բառարան, հ. Ա, Երեւան, 1942, էջ 193): Հ. Աճառյանը ավելացնում է, որ Ապիրատ անունը հանդիպում է նաեւ «Վրաց մեջ»՝ վկայակոչելով Վարդան Արեւելցու պատմության մի հատված, ուր գրված է, որ Գրիգոր Բջնեցին իր հետ վերցնում է «Վրաց Ապիրատ իշխանին» ու երկու այլ մագիստրոսների եւ կռիվ մղում սելջուկների դեմ (**Վարդան Արեւելցի**, էջ 142): Սակայն շարունակության մեջ «Վրաց իշխանի» անունը Լիպարիտ է: Սա հայտնի դեպք է, վկայված նաեւ այլ աղբյուրներում եւ վերաբերում է 1048 թ. Բասենի դաշտում տեղի ունեցած ճակատամարտին, որին բյուզանդական կողմից մասնակցում էին Կատակալոն, Ահարոն, Գրիգոր մագիստրոսները եւ Վրաց Լիպարիտ իշխանը (Հայ ժողովրդի պատմություն, հ. 3, էջ 449): Արեւելցու պատմության հրատարակության համար հիմք ծառայած ձեռագրերում գրչական սխալ է սպրդել, եւ Լիպարիտը դարձել է Ապիրատ, հետեւաբար «Վրաց մեջ» Ապիրատ անուն չկա:

(Բջնեցի) հանրահայտ իշխանի անվան հետ շփոթությունից խուսափելու համար:

Հետեւելով Ն. Ակինյանին՝ վիմագրերում Գրիգոր Մագիստրոս, իսկ պատմիչների մոտ Ապիրատ անվանվող իշխանին, սկզբնաղբյուրների ներդաշնակեցման համար նպատակահարմար ենք գտնում կոչել Գրիգոր Ապիրատ:

## Գրիգոր Ապիրատի հայրը եւ եղբայրը

Ինչպես տեսանք Կեչառիսի շինարարական արձանագրության մեջ Գրիգոր Ապիրատը հիշատակում է հորը՝ Հասանին: Մատթեոս Ուռհայեցին նույնպես նշում է նրա անունը. «Ապիրատ ոմն, որ էր մեծ իշխան Հայոց, որդի Հասանայ»[19]:

Ն. Ակինյանը գրում է. «Հասան. սա հայրն էր Ապիրատի. իր մասին աւելի բան չենք գիտեր»[20]: Բարեբախտաբար բոլորովին վերջերս Մատենադարանի ձեռագրերից մեկում (թիվ 3681) հայտնաբերվեց Հասանի անվան մեկ այլ հիշատակություն Հավուց թառի առաջնորդ Նաթանայելի (14-րդ դ.) Սամվել Անեցու ժամանակագրության մեջ կատարած հավելման շնորհիվ: Պարզվում է, որ Հասանի զավակն է եղել նաեւ Քեղի (Գեղի) ամրոցի տեր իշխան Գեւորգը, որը 1002 թ. կառուցել է Հավուց թառի Կաթողիկե եկեղեցին: Մինչեւ այժմ Մխիթար Այրիվանեցու կարճ հաղորդմամբ հայտնի՝ «Շինի եւ Հաւուց թառն ի Գէորգեայ իշխանէն Քեղւոյ»[21] տեղեկությունը Նաթանայելը հարստացրել է Գեւորգ իշխանի ծագման մասին չափազանց արժեքավոր վկայությամբ՝ **«Գէորք իշխանաց իշխանն, որդի Հասանայ, եղբար Ապիրատին...»**[22]:

Գրիգոր Ապիրատի եւ Քեղի ամրոցի տեր Գեւորգ իշխանի եղբայրներ լինելու հանգամանքի բացահայտման շնորհիվ պարզ է դառնում, որ Հասանը նույնպես իշխան էր, եւ որ Մխիթար Անեցու՝ Գրիգոր Ապիրատի վերաբերյալ ասածը՝ «յաննշանից մեծացեալ», չի վերաբերում նրա տոհմի ծագմանը: Միաժամանակ, հիմնավորված են դառնում Հասանի որդիների զորության մասին վկայությունները: Մասնավորապես, պատմիչների հաղորդումները, թե Գրիգոր Ապիրատը տեր էր 12 000 հեծյալի, չափազանցություն էր թվում: Մինչդեռ այժմ պարզ է դառնում, որ Հասանի որդիների իշխանությունը տարածվում էր Վարաժնունիքից (Կեչառիս), մինչեւ Երեւան, որտեղ ջրանցք էր կառուցել Գրիգոր Ապիրատը, հասնում Հավուց Թառ ու Քեղի, որը սահմանակից էր Դվինի

[19] **Մատթեոս Ուռհայեցի**, Ժամանակագրություն (աշխարհաբար թարգմանությունը եւ ծանոթագրությունները *Հ. Բարթիկյանի*), Երեւան, 1991, էջ 16 (այսուհետեւ՝ Ուռհայեցի):
[20] **Ն. Ակինյան**, Ներսես Լամբրոնացի, էջ 373:
[21] Մխիթարայ Այրիվանեցւոյ Պատմութիւն Հայոց, էջ 57:
[22] ՄՄ, ձեռ. թիվ 3681, էջ 78ա:

ամիրայությանը: Այսպիսի տարածքի վրա իշխողները կարող էին նշանակալից զինուժ ունենալ: Համեմատության համար նշենք, որ Բջնիի տեր Վասակ Պահլավունու (Գրիգոր Մագիստրոս Պահլավունու հոր) մասին ասվում է, որ նա իր տրամադրության տակ ուներ «...արք իբրեւ հինգ հազար»[23]:

Գեւորգի մասին ավելացնենք, որ Նաթանայել Հավուցթառեցու հայտնածի համաձայն իշխանը ոչ միայն կառուցել է Հավուց թառի ինը խորանով Կաթողիկե եկեղեցին (այժմ՝ ավերված է), այլեւ վանքին զգալի նվիրատվություններ կատարել, այդ թվում Գողթ գյուղը, որ նա գնել էր Գագիկ Ա թագավորից ու նրա որդուց՝ Հովհաննես Սմբատից. **«Գէորք իշխանաց իշխանն, որդի Հասանայ, եղբար Ապիրատին վերըստին նորոգեց զնախադրական հուչակաւոր սուրբ ուխտն զՀաւուց Թառ եւ շինեց զփառաւոր զհրաշալի Կաթողիկէն Թ. (9) խորանաւ: Եւ արար գանձագին զմերձակա գեղն զԿոխթ ի Գագիկ շահանշահէ եւ Յովանիսէ եւ ետ Հաւուց Թառոյ Սուրբ Կաթողիկէին հայրենիք եւ ետ ի հայրենե(ա)ց իւր զԳետոց վանսն եւ զՀովայսն վանքագեղ եւ ժողովեաց Գճ. (300) կրաւնաւոր»**[24]:

Գեւորգ իշխանի ժամանակ Հավուց թառի ծաղկման մասին նշում է նաեւ Մանուել Բջնեցին (15-րդ դ.), իր գանձում. «Զմեծդ մենաստան, զոր կանգնեաց արքայն եւ Գէորգ իշխան...»[25]: Նրա մոտ բավական խառն են տեղեկությունները վանքի նշանավոր «Ամենափրկիչ» կոչվող սրբազան խաչի վերաբերյալ, որի կապակցությամբ նշում է բյուզանդական Վասիլ կայսեր եւ Գեւորգ իշխանի անունները, բայց հիմնական դերը վերապահում է Գրիգոր Մագիստրոս Պահլավունուն, որը հետագայում առաջացած ավանդության արդյունք է[26]:

Հնարավոր է, որ այդ ավանդության առաջացմանը նպաստել է Հավուց Թառում «Գրիգոր Մագիստրոսի» անունով եղած 1013 թվականի արձանագրությունը (քարը կորել է, պահպանվել է միայն տեքստը), որը վերաբերում է «Ամենափրկչի» նվիրատվությանը: Որոշ ուսումնասիրողներ այն կեղծված

---

[23] **Ուռհայեցի**, էջ 16:

[24] ՄՄ, ձեռ. հմր 3681, էջ 78ա, **Կ. Մաթեւոսյան**, Հավուց թառի վանքի եւ Ապիրատյան տոհմի պատմության նորահայտ տվյալներ. – «Բանբեր Մատենադարանի», հ. 17, Երեւան, 2006, էջ 147-167: Գանձագին արված Գողթից բացի իշխանն իր սեփականությունից վանքին է նվիրել Կոտայքի Ովա գյուղը (Հովհաննես Դ Օվայեցի կաթողիկոսի ծննդավայրը), որպես «վանքագեղ»:

Նաթանայելը Գեւորգ իշխանի մասին թողել է նաեւ մի հիշատակում, ըստ որի Հավուց թառը «նորոգեաց սպարապետն Հայոց Գորք իշխանն» (**Գ. Յովսէփեան**, Յիշատակարանք ձեռագրաց, հ. Ա, Անթիլիաս, 1951, էջ 663):

[25] **Գ. Հովսեփյան**, Հավուց Թառի ամենափրկիչը եւ նույնանուն հուշարձաններ հայ արվեստի մեջ, Նյութեր եւ ուսումնասիրություններ հայ արվեստի պատմության, հ. Բ, Երեւան, 1987, էջ 92:

[26] **Կ. Մաթեւոսյան**, Հավուց թառի վանքի..., էջ 165-166:

*արձանագրություն են համարել[27]: Արձանագրության տեքստը հավանաբար հետագայում միջամտության է ենթարկվել: Սկզբում ասվում է. «ԹՈՒԻՆ ՆԿԲ (1013) Ի ԹԱԳԱՒՈՐՈՒԹԵԱՆՆ ԳԱԳԿԱՅ ԵՒ Ի ՀԱՅՐԱՊԵՏՈՒԹԵԱՆՆ ՏԵԱՌՆ ՍԱՐԳՍԻ, ԵՍ ԳՐԻԳՈՐ ՄԱԳԻՍՏՐՈՍ ՎԵՐՍՏԻՆ ՇԻՆԵՑԻ ՋԵԿԵՂԵՑԻՍ ՅԻՇԱՏԱԿ ԻՆՁ ԵՒ ԾՆՈՂԱՅՆ ԻՄՈՅ...»[28], այնուհետեւ երկարաբան ոճով պատմվում է շրջակայքի «գանձագին» արվելու եւ վանքին նվիրաբերվելու[29], ինչպես նաեւ Քրիստոսի՝ փայտից փորագրված «անձեռագործ սուրբ պատկերի» նվիրատվության մասին:*

*Գեւորգ իշխանի տոհմաբանության մասին նորահայտ տեղեկության շնորհիվ ակներեւ է, որ եթե Հավուց թառում եղել է 1013 թվականի մի արձանագրություն Գրիգոր Մագիստրոսի անունով, ապա նա վանքի հովանավոր իշխանի եղբայր Գրիգոր Ապիրատն է, որն ինչպես տեսանք, 11-րդ դարի աղբյուրներում հիշատակվում է միայն Գրիգոր Մագիստրոս անունով: Հնարավոր է, որ հենց այդ անունն էլ շփոթեցրել է հետագայի հեղինակներին, որոնց իմացած «Գրիգոր Մագիստրոսը» միայն Պահլավունի (Բջնեցի) իշխանն էր, ուստի «Ամենափրկիչին» վերաբերող պատմությունները «ծաղկեցրել են» հենց Պահլավունի իշխանի կենսագրության տվյալներով:*

*Վերադառնալով Մանուել Բջնեցու հաղորդմանը՝ նշենք, որ թեեւ նա երկար բարակ պատմալով Գրիգոր Մագիստրոս Պահլավունու մասին, այնուամենայնիվ գրում է, որ Ամենափրկիչն ընծայել են Վասիլ կայսրն ու Գեւորգ իշխանը («Մեզ տըւեալ ընծա յարքայէն Վասլայ եւ Գորգ իշխանայ»): Բայց ավելի ուշագրավ է իշխանի ծագման մասին հեղինակի ակնարկը՝ «...**Գէորգ իշխանի՝ ոստ Բագրատունի**»[30]: Դժվար է ասել՝ արդյոք 15-րդ դարում ապրող հեղինակը որեւէ աղբյուր ունեցե՞լ է այդ արտահայտության համար, թե՞ այն պարզապես թելադրվել է չափածո ստեղծագործության գովաբանական ոճով:*

*Ցավոք հայտնի չէ Հասանի հոր անունը[31]: Ինչ վերաբերում է տոհմանվա-*

---

[27] **Ն. Ակինյան**, Գրիգոր-Ապիրատ, որդի Հասանա, Մագիստրոս, էջ 118, Գ. Սարգսյան, Հավուց թառի հիմնադրման վկայագրի շուրջ. – «ՀՀ ԳԱ Լրաբեր հաս. գիտ.», 1988, № 4, էջ 70:

[28] **Գ. Հովսեփյան**, Հավուց Թառի ամենափրկիչը..., էջ 6:

[29] Արձանագրության շարունակությունը՝ «...գանձագին արարի զվայրս սորա լերամբն եւ դաշտամբն եւ ամենայն կազմութեամբն որ ի սմա», համեմատելի է Վահրամ Պահլավունու՝ Մարմաշենի 1029 թ. արձանագրության մի հատվածին՝ «...լիացուցաւ ամենայն գոյիւ, լերամբ եւ դաշտաւ, աւանդեցաւ ի սա գեղս եւ ագարակս գանձագինս...» (**Աբէլ Մխիթարեանց**, Տեղագրութիւն Մարմաշինոյ վանացն ի Շիրակ, Վաղարշապատ, 1870, էջ 10):

[30] **Գ. Հովսեփյան**, Հավուց Թառի ամենափրկիչը..., էջ 91:

[31] Հրապուրիչ է թվում ենթադրել, թե Հասանի նախնիներից էր Աշոտ Երկաթի (914-929) հավատարիմ զորական, ականատես պատմիչ Հովհաննես Դրասխանակերտցու բնու-

նը, ապա մինչեւ այժմ մասնագիտական գրականության մեջ հավասարապես կիրառվող «Հասանյան» կամ «Ապիրատյան» տարբերակներից պետք է ընտրել առաջինը: Բանն այն է, որ մինչ այժմ Գրիգոր Ապիրատն էր համարվում տոհմը բարձրացնող, հետեւաբար իշխանական տան հիմնադիր[32], բայց այժմ, նրա եւ Գեւորգ իշխանի եղբայրներ լինելու հանգամանքի բացահայտմամբ մեծանում է Հասանի կշիռը, որպես տոհմապետ: Նշենք նաեւ, որ այս տոհմի կրտսեր ներկայացուցիչներին անդրադառնալիս՝ պատմիչները նրանց նախնիների թվարկումը հասցնում են մինչեւ Հասանի անունը: Օրինակ՝ Մատթեոս Ուռհայեցին Գրիգոր Ապիրատի թոռանը ներկայացնում է հետեւյալ կերպ. «...քաջ զորականն եւ մեծ հաւատացեալն **Գրիգոր, որդի Վասակայ, որդի Ապիրատին՝ որդւոյ Հասանայ**, յազգէ քաջանց...»[33]: Պատմիչը եւ նրան հետեւելով Սմբատ Սպարապետը, նույն հետադարձ թվարկումն են անում այս Գրիգորի եղբորը՝ Բարսեղ Անեցի կաթողիկոսին ներկայացնելիս[34]:

Քեղիի տեր Գեւորգ իշխանի ժառանգների մասին մինչ այժմ ոչինչ հայտնի չէր, սակայն հոր անվան հայտնի դառնալով, այժմ հնարավոր է նրանց փնտրել հենց նույն Հավուց թառում: Վանքի տարածքում սելջուկյան տիրապետության շրջանից պահպանված միակ արձանագրությունը, որը խաչքարի վրա է, հետեւյալ բովանդակությունն ունի. «Յիշէ Քրիստոս **զՀասան**, զորդի **Սմբատա,** զծառա քո եւ ողորմեա նմա, ամէն, թվ. ՇԼ. (1081) էր»[35]: Եթե նկատի ունենանք հայկական իշխանական տոհմերի մոտ ավագ թոռանը պապի անունով կոչելու կայուն սովորությունը[36], ապա կարող ենք ենթադրել, որ Գեւորգ

---

թագրմամբ՝ թագավորի պատվավորներից («ոմն ի պատուաւորաց») Գեւորգը (հետագայում Մարզպետունի կոչված): Ուշագրավ է, որ նա հիշվում է հենց Քեղի ամրոցում, երբ մոտեցող արաբներին պարտության է մատնում բերդից դուրս գալով ու համարձակորեն նրանց վրա հանձակվելով (**Հովհաննես կաթողիկոս Դրասխանակերտցի**, Հայոց պատմություն, աշխարհաբար թարգմանությունը եւ ծանոթագրությունները *Գ. Թոսունյանի*, Երեւան, 1996, էջ 356-357): Սակայն այդպիսի ենթադրության համար լրացուցիչ փաստարկներ են պետք:

[32] **Կ. Մաթեւոսյան**, Հազարամյա Կեչառիսի հիմնադրման պատմությունից, էջ 82:

[33] **Ուռհայեցի,** էջ 288:

[34] Նույն տեղում, էջ 226, Սմբատայ Սպարապետի տարեգիրք, Վենետիկ, 1956, էջ 82:

[35] **Գ. Հովսեփյան,** Հավուց Թառի ամենափրկիչը..., էջ 17: Գ. Հովսեփյանը, որը վանքը Պահլավունիներինն էր համարում, Հասանին եւ Սմբատին այդ ազնվականական տոհմի ներկայացուցիչներ է կարծում (նույն տեղում, էջ 20):

[36] Կիլիկյան հայկական ազնվական տոհմերին անդրադառնալով՝ Լ. Տեր-Պետրոսյանը գրում է. «Մեծ հոր եւ անդրանիկ թոռան անունների նույնությունը քարացած ավանդույթ էր հայ միջնադարյան ազնվական գերդաստաններում: Համենայն դեպս Ռուբինյան եւ Հեթումյան ընտանիքների ազգաբանությունն այս առումով համարյա բացառություն չի ճանաչում. բոլոր այն դեպքերում, երբ հաստատված է, որ թոռն անդրանիկն է, նա անպայման կրում է պապի անունը…» (**Լ. Տեր-Պետրոսյան**, Խաչակիրները եւ հայերը, հ. Բ, Երեւան, 2007, էջ 79):

իշխանի որդին կրել է պապի անունը՝ Հասան, եւ նրա ժառանգներն են Սմբատն ու վերջինիս որդի Հասանը: Անուղղակիորեն այս ենթադրության օգտին է խոսում այն, որ Գրիգոր Ապիրատի երկու որդիները Ապլչահապ եւ Վասակ անուններն ունեին: Գրիգոր Ապիրատն իր զավակներից մեկին հոր անունով Հասան չի անվանակոչել ամենայն հավանականությամբ այն պատճառով, որ իր ավագ եղբոր՝ Գեւորգի որդին արդեն կրում էր այդ անունը:

Կարծում ենք, որ հենց այս համատեքստում պիտի որոնել Գրիգոր Ապիրատի մասին ասվածը, թե նա «**յաննշանից մեծացեալ**, եւ վասն խելացի եւ առատ ձեռացն մինչեւ լիներ տէր երկոտասան հազար հեծելոց»: Հավանորեն նա Հասանի կրտսեր որդին էր եւ մինչ Գեւորգը ավագության իրավունքով ժառանգել էր հոր իշխանությունն ու Քեղի բերդը, իր որդուն էլ կոչել նրա անունով՝ Հասան, կրտսեր Գրիգորն իր խելքով ու ձեռներեցությամբ «ոչ նշանավորներից», կամ «փոքրերից» բարձրացել ու տեր էր դարձել բազմաքանակ հեծելազորի:

Հավուց Թառի խաչքարի առնչությամբ ավելացնենք, որ այն հավանաբար պատահականորեն չի կանգնեցվել հատկապես 1081 թվականին: Այդ տարի Գրիգոր Ապիրատի թոռը՝ Բարսեղը, Հաղբատում կաթողիկոս ձեռնադրվելով, մեծ շուքով եկավ Անի, եւ ինչպես Մատթեոս Ուռհայեցին է գրում՝ «...**եղեւ օրն այն օր մեծ եւ ուրախութիւն ամենայն Տանն Հայոց, վասն զի տեսին նորոգեալ զաթոռ հայրապետութեանն ի քաղաքն յԱնի**»[37]: Եթե Հավուց Թառի արձանագրության մեջ հիշված Սմբատը Քեղիի տեր Գեւորգի թոռն էր, ապա նրա ու Բարսեղի պապերը, փաստորեն, եղբայրներ էին, եւ հավանական է, որ Սմբատի որդի Հասանը 1081-ին խաչքար կանգնեցնելով յուրովի արձագանքել է կաթողիկոսական աթոռի Անիում վերահաստատվելու տոնին, որի գլխավոր դերակատարն իր տոհմակիցն էր:

### Գրիգոր Ապիրատի վախճանը

Ինչպես Մխիթար Անեցու հայտնածից իմացանք, Գրիգոր Ապիրատը Հովհաննես Սմբատ թագավորին Աշոտի դատաստանից ազատելով տանում է Անի: Աշոտի տեսանկյունից՝ դավաճանական, իսկ Հովհաննես Սմբատի տեսանկյունից վեհանձն այդ արարքից հետո Գրիգոր Ապիրատը հայտնվում է դժվարին կացության մեջ: Նա այլեւս չէր կարող վերադառնալ իր գերակայի մոտ (նրա կալվածքները գտնվում էին «Դրուց աշխարհում»), ոչ էլ կարող էր Անիում մնալ, քանի որ դրանից կարճ ժամանակ առաջ Աշոտի զորքի հետ ծանր կո-

---

37 **Ուռհայեցի**, էջ 236-238:

*րուստներ էր պատճառել անեցիներին*[38]*: Այս իրավիճակում, հատկապես Աշոտի վրեժխնդրությունից խուսափելու համար, Գրիգոր Ապիրատն ընտանիքով ու զորքով հանդերձ հարկադրված էր հեռանալ Բագրատունիների տիրույթներից: Մատթեոս Ուռհայեցու վկայությամբ նա ապաստան է գտնում Դվինի ամիրա Ապուսուարի մոտ, որը Շադդադյան Աբուլասվար (Աբու-լ-Ասվար) ամիրան է: Ըստ պատմիչի, սա սկզբում լավ է ընդունում Ապիրատին, սակայն չարախոս մարդիկ նրան զգուշացնում են, որ բազմաքանակ զորքով իր մոտ գտնվող իշխանը վտանգ է ներկայացնում, եւ նա դավադրաբար սպանում է Ապիրատին: Իշխանի զորավար Սարին վերցնում է Ապիրատի կնոջն ու երկու որդիներին գալիս Անի, ուր Հովհաննես Սմբատ թագավորը գրկաբաց է ընդունում նրանց եւ վերջիններիս գավառներ ու իշխանություն շնորհում: Պատմիչը գրում է. «Իսկ յայսմ աւուրս Ապիրատ ոմն, որ էր մեծ իշխան Հայոց, որդի Հասանայ, սա վասն Աշոտոյ միաբանութեանն, զոր ունէր յառաջագոյն, երկուղեալ ի թագաւորէն Յովհաննիսէ, ապստամբեալ փախեաւ ի նմանէ եւ գնաց ի Դուին քաղաք, առ Ապուսուար զօրաւարն Պարսից եւ երկոտասան հազար ձիաւորք ընդ նմա. եւ Ապուսուար մեծարեալ զնա բազում աւուրս: Յայնժամ մատեան առ Ապուսուար չարախօսք ոմանք եւ ասէն, եթէ «Այսպիսի այր յաղթող եւ զօրաւոր եւ զօրօք բազմօք եկեալ է առ քեզ, կորուստ գործէ քեզ եւ ամենայն տանս Տաճկաց»: Յայնժամ ոխս առեալ ամիրային ի սիրտ իւր եւ գաղտ յայլ զօրացն ի զրոյց սիրոյ կոչեաց զԱպիրատն եւ ի ծածուկ կորոյս զայնպիսի այր քաջ, հզօր եւ անուանի ի մէջ ամենայն աշխարհին Հայոց:*

*Իսկ իշխան ոմն Սարի անուն, որ էր զօրավար մեծ իշխանին Ապիրատին, առեալ զկին եւ զորդիս նորա եւ զհեծելազունդ զօրսն եւ գնաց ի քաղաքն յԱնի. եւ թագաւորն Յովհաննէս կարի յոյժ ապաշաւէր զանիրաւ մահն Ապիրատին Հայոց իշխանին: Եւ որդեաց նորա Ապլջահապայ եւ Վասակայ, եւ Սարէ եւ զմենայն զօրացն տայր թագաւորն Հայոց գաւառս եւ զիշխանութիւնս»*[39]*:*

*Եթե հայտնի չլիներ Մխիթար Անեցու պատմածը Թալինի դեպքի մասին, Ուռհայեցու հաղորդածի սկիզբն ու վերջը ոչ մի կերպ չէր կապակցվի: Այսինքն՝ եթե Ապիրատը ապստամբել ու փախել էր Հովհաննես Սմբատից, ինչու պիտի վերջինս այդպես ողբար իշխանի «անիրաւ» կորուստը եւ նրա զավակներին էլ կալվածքներ ու իշխանություն տար:*

---

[38] Աշոտի հաղթանակի մասին Ուռհայեցին է գրում. «Եւ եղեւ յաւուր այնմիկ սաստիկ պատերազմ եւ դարձուցին զքաղաքն ի փախուստ, մինչ զի փախուցեալքն ոչ ժամանէին մտանել ի քաղաքն, այլ յԱխուրան գետն անկանէին, եւ դարձաւ Աշոտ մեծաւ յաղթութեամբ» (**Ուռհայեցի**, էջ 14):

[39] **Ուռհայեցի**, 1991, էջ 16-17: Ապիրատի հետ պատահածի մասին, Ուռհայեցուց օգտվելով, հակիրճ պատմում է նաեւ Սմբատ Սպարապետը (Սմբատայ Սպարապետի տարեգիրք, էջ 6):

Ուռհայեցին եւ Մխիթար Անեցին այս դեպքերի թվականը չեն նշում: Բայց Ուռհայեցու մոտ այս տեղեկությունը զետեղված է մի հատվածում, ուր խոսվում է 1021 թ. տեղի ունեցեած անցքերի մասին: «Թագաւորք վերջինք Բագրատունիք» բնագրի վերջում ավելացված անանուն հեղինակի փոքր ժամանակագրության մեջ արձանագրված է Ապիրատի մահվան թվականը. «ՆՀ. (1021) Թուրքն եհար զԱպիրատն»[40]: Այս տեղեկությունը, նույն թվականով, մուծված է նաեւ Սամվել Անեցու ժամանակագրության այն օրինակում, որը շարունակել է Ստեփանոս Օրբելյանը. «Թուրքն էհար զԱպիրատն»[41]:

Հարկ է նշել, որ Աբուլասվար Շադդադյանի իշխանության սկիզբը Դվինում համարվում է 1021 կամ 1022 թվականը[42]: Փաստորեն, Գրիգոր Ապիրատն Աբուլասվարի մոտ է գնացել նրա Դվինում հաստատվելու առաջին տարում[43]:

Գրիգոր Ապիրատի սպանության պատմության մեջ շատ պարզունակ է թվում պատմիչի բացատրությունը, թե Շադդադյան ամիրան իշխանին սպանում է «չարախոս մարդկանց» լսելով[44]: Չի բացառվում, որ Աբուլասվարն Ապիրատին սպանել է Աշոտի դրդմամբ կամ էլ վերջինիս հաճոյանալու համար: Մի բան հստակ է, որ հետագայում նրանց հարաբերությունները սերտացել են այնքան, որ Աշոտն իր դստերը (որն իր մոր՝ Կատրամիդեի անունն էր կրում)[45]

---

[40] Մանր ժամանակագրություններ, 13-18-րդ դդ., հ. 2, կազմեց՝ *Վ. Հակոբյան*, Երեւան, 1956, էջ 502:

[41] Ժամանակագրութիւն Ստեփաննոսի Օրբէլեանի, հրատարակության համար պատրաստեց *Ա. Աբրահամյանը*, Երեւան, 1942, էջ 12:

[42] Մունաջջիմ Բաշիի վկայությամբ՝ Աբուլասվարը մահացել է 1067 թ. նոյեմբերին, իսկ նրա իշխանությունը տեւել է 46 տարի: Այս մասին նշելով՝ Ա. Տեր-Ղեւոնդյանը գրում է. «...ուստի 46 տարի ետ գնալով կստանանք մոտավորապես 1022 թ., որպես Դվինում նրա իշխանության սկիզբը» (**Ա. Տեր-Ղեւոնդյան**, Արաբական ամիրայությունները Բագրատունյաց Հայաստանում, Երեւան, 1965, էջ 209): Թույցե մեկ տարվա տարբերությունն այստեղ այնքան էլ կարեւոր չէ, սակայն Աբուլասվարի մահվան թվականից նրա իշխանության տարիների թվով հետ գնալու դեպքում ստանում ենք 1021 թ. (1067-46=1021):

[43] Աբուլասվարից առաջ Դվինում մի կարճ շրջան անիշխանություն է եղել (**Ա. Տեր-Ղեւոնդյան**, Արաբական ամիրայությունները..., էջ 208):

[44] Եթե Ապուսուարի մտավախությունը Դվինում քրիստոնյա զորքի ներկայությունը լիներ, ապա պիտի միայն Ապիրատի սպանությամբ չբավարարվեր: Սակայն ուրիշ զոհեր չեն եղել: Ըստ երեւույթին ժամանակակիցների համար պարզ եւ որոշ իմաստով հասկանալի է եղել, որ Գրիգոր Ապիրատն իր գերակային՝ Աշոտին դավաճանելու համար վերջինիս վրեժխնդրության զոհն է դարձել: Իսկ իշխանի ընտանիքն ու զորքը անարգել հեռացել է Դվինից եւ գնացել այնտեղ, ուր նրանց (արդեն առանց Ապիրատի) պատրաստ էին գրկաբաց ընդունելու Անի:

[45] Նրա անունը հիշվում է Կատա կրճատ ձեւով (**Վարդան Արեւելցի**, էջ 126, **Կ. Մաթեւոսյան**, Անի. եկեղեցական կյանքը եւ ձեռագրական ժառանգությունը, Ս. Էջմիածին, 1997, էջ 347-348):

*կնությյան է տվել Աբուլասվարին*[46]*: **1030-ականներին** այս ամուսնությունից ծնված նրանց որդին՝ Մանուչեն Անիի տերը դարձավ **1065-ին***[47]*: Հետաքրքիր է որ վերջինիս եւ Գրիգոր Ապիրատի զավակների միջեւ հետագայում թշնամություն չի եղել: Դվինում կատարված դեպքից շուրջ չորս տասնամյակ անց, երբ սելջուկների ձեռքն անցած Անին հանձնվեց Մանուչեին, վերջինս քաղաք հրավիրեց Գրիգոր Ապիրատի որդուն՝ տարեց Վասակին եւ նրա որդի Գրիգորին: Երիտասարդ ամիրան քաղաքից դուրս գալով եւ ընդառաջ գնալով դիմավորեց նրանց ու բերեց Անի: Իսկ վերջիններս, ընդունելով Մանուչեի գերիշխանությունը, հավատարմորեն ծառայեցին նրան:*

## ***Գրիգոր Ապիրատի զավակները***

*Կեչառիսի **1003** թ. արձանագրության մեջ Գրիգոր Ապիրատը հիշատակում է իր որդիներին, հետեւաբար ենթադրելի է, որ Ապլջահապն ու Վասակն այդ ժամանակ արդեն ծնված էին (եթե ուրիշ զավակներ չի ունեցել): Դատելով Ուռհայեցու մոտ նրանց անունների հիշատակման հերթականությունից, Ապլջահապն ավագն է եղել:*

*Սակայն նրանց անդրադառնալուց առաջ հիշատակենք Գրիգոր Ապիրատի դստերը, որն իր մասին հիշեցնում է Տեկորի **1042** թ. արձանագրության մեջ. «Ես **Տիկ(ն)աց Տիկին, դուստր Քրգորոյ Մագիստռոսին** եւ ամուսին Սարգսի Արեւելից Վեստիս...»*[48]*: Ուսումնասիրողները հաճախ նրա հորը թյուրիմացաբար նույնացրել են Գրիգոր Մագիստրոս Պահլավունու (Բջնեցու) հետ*[49]*, մինչդեռ Պահլավունի իշխանը մագիստրոսի պատիվ ստացել է ավելի ուշ՝ **1045**-ին:*

*Ոմանց կարծիքով արձանագրության մեջ բացակայում է իշխանուհու անունը, «Տիկնաց տիկինը» համարում են մեծարական դիմելաձեւ, ինչպես օրինակ Գրիգոր Պահլավունու քույրն է Բագնայրի արձանագրություններից մեկում գրում. «ես Սեդա տիկնաց տիկին»*[50]*: Սակայն կար նաեւ «Տիկնացտիկին» անձնանուն, կրճատ ձեւը՝ Տիկնաց*[51]*, եւ Գրիգոր Ապիրատի դուստրը, մեր*

---

[46] **Լաստիվերցի**, էջ 62, **Ê. Þ çáàø ÿí**, Àðì ÿí ñêèå ãî ñóäàðñòâà ýï î õè Áàãðàòèäî â... , ñ. 167-168.

[47] **Հ. Մարգարյան**, Հյուսիսային Հայաստանի եւ Վրաստանի ԺԲ դարի պատմության մի քանի հարցեր, Երեւան, 1980, էջ 86:

[48] **Ղ. Ալիշան**, Շիրակ, Վենետիկ, 1881, էջ 135:

[49] **Լեո**, Անի, Երեւան, 1963, էջ 322-327, Հայ ժողովրդի պատմություն, հ. 3, էջ 148, **Ê. Þ çáàø ÿí**, Àðì ÿí ñêèå ãî ñóäàðñòâà ýï î õè Áàãðàòèäî â..., c 161, եւ այլն:

[50] **Ղ. Ալիշան**, Շիրակ, էջ 113:

[51] Հ. Աճառյանը «Տիկնաց» անձնանվան մասին գրում է. «անշուշտ տիկնաց տիկին ձեւից՝ կրճատմամբ» (**Հ. Աճառյան**, Հայոց անձնանունների բառարան, հ. Ե, Երեւան, 1962, էջ 153):

կարծիքով, հենց այդ անվան կրողն էր:

Ն. Ակինյանը գրում է. «1021-ին երբ Ապիրատ սպանուեցաւ Ապուսուարէն, Վասակ եւ Ապլջահապ վերադարձան Անի. Յովհ. Սմբատ սիրով ընդունեցաւ զանոնք եւ յանձնեց հաւանօրէն անոնց քրոջ, որ կինն էր Վեստ Սարգսի»[52]: Սակայն դժվար է ստույգ ասել, որ 1021-ին Տիկնացտիկինն արդեն Վեստ Սարգսի կինն էր: Գրիգոր Ապիրատի մահից հետո երբ նրա զավակներն Անի եկան, Հովհաննես Սմբատն իր խնամակալության տակ առավ նրանց եւ հնարավոր է, որ հենց այդ ժամանակ էլ իշխանադստերն ամուսնացրեց Սարգսի հետ, որը մեկն էր «ի գլխաւոր ազատացն Հայոց»[53]:

Հովհաննես Սմբատի մահվան ժամանակ Վեստ Սարգիսը նրա հոգաբարձուն էր[54]: Նա տեր էր մի շարք բերդերի, կառուցել է Խծկոնքի վանքը, իսկ Ծառաքարի վանքը բերդի վերածել (բերդը հիշատակվում է նաեւ Մաղասբերդ անունով): Հովհաննես Սմբատի մահից հետո նա փորձեց գրավել թագավորական գահը, բայց անհաջողության մատնվեց: Հայտնի չէ, թե Անիի բյուզանդական նվաճումից հետո ինչ է եղել Վեստ Սարգսի հետ: Սակայն հետաքրքիր է, որ հետագայում Ծառաքար բերդն անցել է նրա կնոջ տոհմակիցներին[55]:

Այժմ տեսնենք թե ինչ ճակատագիր ունեցան Գրիգոր Ապիրատի որդիները՝ **Ապլջահապը** եւ **Վասակը**:

1045-ին Անին ընկնում է բյուզանդական տիրապետման տակ, Մոնոմախ (1042-1054) կայսեր հրավերով Կոստանդնուպոլիս մեկնած երիտասարդ Գագիկ Բ-ին արգելվում է Հայաստան վերադառնալ: Մեկ տարի անց բյուզանդացիները Անիից հեռացնում են նաեւ Պետրոս կաթողիկոսին եւ իրենց 19 ամյա տիրապետության ժամանակ ոչ նրան, ոչ էլ հաջորդ կաթողիկոս Խաչիկ Անեցուն չեն թողնում քաղաք վերադառնալ:

Գրիգոր Պահլավունին թեեւ նույնպես թողնում է հայրենի կալվածքը՝ Բջնին, սակայն մագիստրոսի պատվաստիճան է ստանում[56], նշանակվում Տա-

---

[52] **Ն. Ակինյան**, Ներսես Լամբրոնացի, էջ 390:

[53] Արիստակիսի Լաստիվերցւոյ Պատմութիւն (աշխատասիրությամբ՝ *Կ. Յուզբաշյանի*), Երեւան, 1963, էջ 57:

[54] Արիստակիսի Լաստիվերցւոյ Պատմութիւն, էջ 57:

[55] Անեցիների կողմից 1186 թ. Ծառաքարի գրավման առնչությամբ Վարդան Արեւելցին եւ «Պատմութիւն քաղաքին յԱնւոյ» երկը նշում են, որ բերդը Անիի Սարգիս Բ եպիսկոպոսի տոհմի սեփականությունն էր. «ՋՃԼԵ. (1186)…ի սոյն թուիս… հարեան զօրօք քաղաքացիքն յԱնւոյ եւ գնացին ի վերայ ամուռ բերդին, որ Ծառաքար անուանի, որ էր բնիկ սեփական եւ ժառանգութիւն տեառն Բարսղի կաթողիկոսին հարցն եւ եղբարցն…» (**Մխիթար Անեցի**, էջ 109-110, **Վարդան Արեւելցի**, էջ 136):

[56] «Գրիգոր որդի քաջին Վասակայ… գնաց առաջի թագաւորին եւ… տայ զբանալին Բջնոյ զթագաւորն եւ զամենայն զիւր զհայրենի ժառանգութիւնն եւ… առնու զպատիւ **մագիս-**

*րոնի ու Հայկական Միջագետքի կուսակալ եւ, փաստորեն, դառնում է Հայաստանում ամենաազդեցիկ հայազգի գործիչը*[57]:

*Այդ շրջանում կայսրությունն ընդգծված պայքար էր սկսել Հայոց եկեղեցու դեմ*[58]: *Խաչիկ Անեցու մահից հետո (1065), երբ բյուզանդացիները փորձում էին արգելել նոր կաթողիկոսի ընտրությունը, հայության միասնական ջանքերով հնարավոր դարձավ հաղթահարել այդ արգելքը: Գրիգոր Մագիստրոս Պահլավունու Վահրամ որդին Գրիգոր անունն ընդունելով դարձավ Հայոց կաթողիկոս (Գրիգոր Բ Վկայասեր):*

*Այս շրջանում Գրիգոր Մագիստրոս Պահլավունին փորձել է արքունիքում ունեցած իր կապերն օգտագործելով արտոնություններ ստանալ նաեւ առանձին վանքերի համար: Այդ առանձնաշնորհին արժանանում են երկու վանք՝ Մարմաշենը, որ հիմնել էր իշխանի հորեղբայր սպարապետ Վահրամ Պահլավունին եւ Կեչառիսը*[59]*, որի հիմնադիր Գրիգոր Ապիրատի երկու զավակներն իր փեսաներն էին:*

*Գրիգոր Ապիրատի որդիների եւ Գրիգոր Բջնեցու դուստրերի ամուսնության մասին*[60] *Ն. Ակինյանը գրում է. «Վկայուած է, թէ Վասակի կինը Գրիգորի դուստրն է, բայց լռած է պատմութիւնը ի մասին Ապլչահապի: Մինչ Վասակ մնաց Արեւելք (Անի, Խաչէնք), Ապլչահապ կերեւայ թէ 1045-ին իր աներոջ հետ գաղթեց Միջագետք եւ տիրացաւ այնտեղ Ծովք ամուր բերդին»*[61]*: Ն. Ակինյանի այն ենթադրությունը, որ հենց Գրիգոր Ապիրատի որդի Ապլչահապն է եղել Գրիգոր Բջնեցու դուստրերից մեկի ամուսինը, որից ծնվել են նրանց Ապիրատ, Գրիգորիս, Վահրամ, Վասակ զավակները, միանգամայն տրամաբանական է: Բնութագրական է հատկապես Ապիրատ հազվագյուտ անունով անդրանիկ որդու անվանակոչությունը, որի մասին նրա զավակը՝ Ներսես Շնորհալին գրում է.* ***«Զնախնական անուն առեալ, որ Ապիրատն էր յորջորջեալ»***[62] *(«Նախնա-*

**տրոսութեան** եւ տեղիս բնակութեան ի սահմանս Միջագետաց...», Արիստակէսի Լաստիվերցւոյ Պատմութիւն, էջ 62:

[57] Հետաքրքիր է, որ Մխիթար Այրիվանեցին, այս իրավիճակն ընդհանրացնելով, գրում է. «Իսկ Մոմնոմախն, որ կալաւ զԳագիկ թագաւորն՝ ետ զիշխանութիւն երկրիս Գրիգորոյ Մագիստրոսի...» (**Մխիթար Այրիվանեցի**, էջ 58):

[58] **Կ. Մաթեւոսյան**, Անի, էջ 36-47, 193:

[59] **Կ. Մաթեւոսյան**, Հազարամյա Կեչառիսի հիմնադրման պատմությունից, էջ 77-91:

[60] Այդ ամուսնությունները տեղի են ունեցել առնվազն 1030-ական թվականներին, եթե նկատի ունենանք Գրիգոր Պահլավունու տարիքը, որը 1021 թվականին՝ Գրիգոր Ապիրատի ու նաեւ իր հոր՝ Վասակի մահվան ժամանակ, բավական երիտասարդ էր:

[61] **Ն. Ակինյան**, Ներսես Լամբրոնացի, էջ 379-380, **Բ. Կիւլէսէրեան**, Ծովք (Ծովք-Տլուք եւ Հռոմ-Կլայ), Վիեննա, 1904, էջ 10-16:

[62] Ներսեսի Շնորհալւոյ Բանք չափաւ, Վենետիկ, 1928, էջ 601:

*կան», այսինքն՝ նախնյաց, հայրենի)*[63]*: Սակայն տարօրինակ է, որ Ապլչահապ անունն այս տոհմի սերունդների մեջ այլեւս չի կիրառվել: Ապլչահապին չի հիշատակում նաեւ իր տոհմի անցյալը հանգամանորեն ներկայացնող Ներսես Շնորհալին, որի պապն էր*[64]*:*

*Քանի որ կաթողիկոսական իշխանությունը շարունակելու տեսակետից Շնորհալու համար չափազանց կարեւոր էր իր եւ ավագ եղբոր՝ Գրիգորի՝ Պահլավունյաց (Ս. Գրիգոր Լուսավորչի) տոհմից սերված լինելն ընդգծելը, նա հատուկ տեղ է տալիս դրան*[65]*, սակայն նշում է, որ մայրական գծով են կապված եղել Պահլավունիներին: Ինչպես երեւում է Գրիգորը (հետագայում Գրիգոր Գ Պահլավունի, նաեւ Փոքր Վկայասեր կոչված) եւ Ներսես Շնորհալին կաթողիկոսական բարձր դիրքի համար իրենց հոր՝ Ապիրատի մայրական պապին պարտական լինելով եւ հայրապետական աթոռի նկատմամբ իրենց ժառանգական իրավունքն անվիճարկելի պահելու մղումով, առանձնապես չեն անդրադարձել իրենց հայրական տոհմին: Պատմիչ Սամվել Անեցին, որ իր Ժամանակագրությունը կազմել է Գրիգոր Գ-ի պատվերով, 1113 թ. տեղի ունեցած նրա աթոռակալությունը ներկայացնելով կաթողիկոսի ծագման մասին միայն նշում*

---

[63] Նոր բառգիրք հայկազեան լեզուի, հ. Բ, Վենետիկ, 1837, էջ 401:

[64] «Վիպասանութիւն նախնի ըստ Հոմերի սկսեալ ի վերուստ» երկում Ներսես Շնորհալին պատմում է իր տոհմի մասին, գովաբանական ոճով անդրադառնում է Գրիգոր Մագիստրոս Պահլավունու գործունեությանը, նկարագրում նրա Վահրամ որդու կաթողիկոսանալը (Գրիգոր Վկայասեր), որի քրոջ թոռն էր ինքը: Շնորհալին, որ այնքան սիրով է հիշատակում իր հորը՝ Ապիրատին, զարմանալիորեն չի տալիս նրա հոր անունը, եւ դա այն դեպքում, երբ հիշատակում է Ապիրատի մայրական գծով պապին՝ Գրիգոր Մագիստրոս Պահլավունուն ու անգամ վերջինիս հորը՝ Վասակին (Ներսեսի Շնորհալւոյ Բանք չափաւ, էջ 587-588): Եթե մի պահ ենթադրենք, որ Գրիգոր Բջնեցու դստեր ամուսինը Ապլչահապը չէր, ինչն ակնարկում է *Վ. Վարդանյանը* («Տովքի Պահլավունիները դարաշրջանի որոգայթներում». – ՀՀ ԳԱԱ պատմության ինստիտուտ, Հայոց պատմության հարցեր, թիվ 8, Երեւան, 2007, էջ 47-48), այլ մեկ ուրիշը, միեւնույն է, նրա անունը, փաստորեն, իր սերունդները մոռացության են մատնել, որի ստույգ պատճառն անհայտ է: Բայց, որ այդ մարդն Ապլչահապն էր, երեւում է ոչ միայն այն բանից, որ նա իր ավագ որդուն իր հոր հազվագյուտ անունով Ապիրատ է կոչել, այլեւ հարակից փաստերից: Ապլչահապի որդի Ապիրատի որդի Գրիգոր Գ կաթողիկոսը 1120-ական թվականներին մտադիր էր հաստատվել Անիում: Մինչ այդ Անիում աթոռակալած վերջին կաթողիկոսը Ապլչահապի եղբայր Վասակի որդի Բարսեղ Ա-ն է եղել (որն Անիից հեռացել է 1105-ին): Սամվել Անեցին գրում է, որ Գրիգոր Գ-ն Անիի, այսինքն՝ Բարսեղ Ա-ի աթոռը համարում է իր «սեփական» աթոռը: Դա անհնարին կլիներ, եթե նա Բարսեղի տոհմակիցը չլիներ: Իսկ Ներսես Շնորհալին Բարսեղ Ա Անեցուն համարում է իր նախնին եւ «արենառուն», այսինքն՝ արյունակիցը (Ներսեսի Շնորհալւոյ Հայոց կաթողիկոսի թուղթ, էջ 8):

[64] **Ուռհայեցի**, էջ 238:

[65] Հատկանշական է 1166 թ. ապրիլի 17-ին Հռոմկլայում կաթողիկոսական ձեռնադրության ժամանակ Ներսես Շնորհալու արտասանած ճառի այն հատվածը, որը վերաբերում է նրա նախնիներին՝ Գրիգոր Լուսավորչից մինչեւ Գրիգոր Վկայասեր եւ Բարսեղ Անեցի (Ներսեսի Շնորհալւոյ Հայոց կաթողիկոսի թուղթ, Վենետիկ, 1875, էջ 8):

*է. «...Տէր Գրիգորիս մեծաշուք պատուով նստեալ յաթոռ վիճակի Սրբոյն Գրիգորի Հայաստանեայցս լուսաւորչի. **որ յազգէ նորին հարազատութեան ճանաչի**»[66]: Հետաքրքիր է, որ «Պատմութիւն Սրբոց Հարցն մերոց» ուշագրավ բնագրում Գրիգոր Գ-ի հայր Ապիրատ իշխանը համարվում է ոչ թե Գրիգոր Վկայասերի քրոջ զավակը, այլ եղբորորդին[67]: Կաթողիկոսական իշխանության փոխանցումը այսօրինակ ուղիղ (արական գծով) ժառանգականությամբ շատ ցանկալի պիտի լիներ Գրիգոր Գ-ի եւ նրա եղբոր՝ Ներսես Շնորհալու, ինչպես նաեւ նույն տոհմից սերող մյուս կաթողիկոսների համար: Հնարավոր է, որ նրանց ժամանակ էլ շրջանառվել է Գրիգոր Վկայասերի եւ Ապիրատի հոր եղբայրներ լինելու մասին կեղծ տեղեկությունը, որը տեղ է գտել վերոնշյալ (հավանաբար 12-րդ դարի վերջերի) բնագրում:*

*Չի բացառվում, որ իր հետնորդների կողմից մոռացության մատնված Ապլջահապը բավական վաղ է մահացել: Նման ենթադրության օգտին է խոսում այն, որ նրա կրտսեր եղբայր Վասակն իր ամենակրտսեր որդուն (դատելով Ուռհայեցու թվարկումից)[68] կոչել է Ապլջահապ, գուցե ի հիշատակ մահացած եղբոր:*

*Հավանաբար Ապլջահապի զավակները մանուկ հասակից մնացել են մայրական պապի՝ Գրիգոր Մագիստրոս Բջնեցու խնամքին: Մասնավորապես այդ իմաստը կարելի է տեսնել Ներսես Շնորհալու խոսքերում, որը Գրիգոր Բջնեցու՝ իր հոր՝ Ապիրատի նկատմամբ վերաբերմունքը բնութագրում է «**Հօրն մերոյ նա հայր եղեալ, ըստ մայրականն մեջնորդեալ**»[69] բառերով: Այսինքն՝ մայրական պապն է, որ հայրություն է արել իր հորը:*

*Հատկանշական է, որ Գրիգոր Բջնեցու որդին՝ Գրիգոր Վկայասերը, նույնպես շատ կապված է եղել հատկապես իր այս քրոջ ընտանիքի ու նրա*

---

[66] Սամուէլի քահանայի Անեցւոյ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց՝ յաղագս գիւտի ժամանակաց անցելոց մինչեւ ի ներկայս ծայրաքաղ արարեալ, յառաջաբանով եւ ծանօթութիւններով *Արշակ Տէր-Միքելեանի*, Վաղարշապատ, 1893, էջ 122, Հմմտ., ՄՄ, ձեռ. թիվ 5619, էջ 101բ-102ա: Անիի պատմության դրվագները ներկայացնելիս Սամվել Անեցին ընդհանրապես չի նշում Գրիգոր Գ-ի արական գծով նախնիներից որեւէ մեկին: Հասանյանները չեն հիշատակվում նաեւ այլ առիթներով: Օրինակ, գրելով որ Մարմաշենը հիմնադրել է Վահրամ Պահլավունին, Բագնայրը՝ Սմբատ Մագիստրոսը, Խծկոնքը՝ «մեծապատիվ» Վեստ Սարգիսը եւ այլն, Սամվել Անեցին ոչինչ չի գրում Կեչառիսի հիմնադրման կամ Հավուց թառի մասին: Հայտնի է, որ ժամանակագրությունը կազմելիս Անեցին առաջնորդվել է պատվիրատուի նախասիրություններով ու ցանկություններով (**Կ. Մաթեւոսյան**, Սամվել Անեցին Անիի պատմության մասին. – «Էջմիածին», 2006, Բ-Գ, էջ 72-85):
[67] «Իսկ տէր Վահրամ (Գր. Վկայասեր – Կ. Մ.) եւ զմանուկն Գրիգորիոս, զորդի Ապիրատին եղբօրորդոյ իւր, յանձնեալ տէր Բարսղի ուսման դպրութեան, զի ետ մահուան իւրոյ նստուցէ աթոռն» (Տե՛ս **Լ. Տեր-Պետրոսյան**, Խաչակիրները եւ հայերը, հ. Բ, հավելված 1, էջ 512):
[68] **Ուռհայեցի**, էջ 238:
[69] Ներսեսի Շնորհալւոյ Բանք չափաւ, էջ 587-588:

չորս զավակների հետ: Վկայասերն էր, որ քրոջ զավակներից մեկին՝ Գրիգորիսին, իր հետ Կոստանդնուպոլիս տարավ, ապա կաթողիկոս դարձրեց Եգիպտոսում եւ շուտով պաշտոններ ապահովելով այնտեղ ուղարկեց նրա եղբայրներին՝ Վահրամին եւ Վասակին[70], հոգ տարավ նաեւ եղբայրներից ավագի՝ Ապիրատի զավակների համար՝ կտակելով, որ նրա Գրիգոր որդուն (Գրիգոր Գ) փոխանցվի հայրապետական աթոռը: Ավելացնենք, որ երբ հանգամանքների բերումով այդ պատգամի կատարումը տեղի ունեցավ Գրիգորի համար շատ վաղ տարիքում, ժամանակակիցները չառարկեցին գլխավորապես այն պատճառով, որ նրան համարեցին «ընտրեալ ի սուրբ ազգէ»[71], այսինքն՝ Ս. Գրիգոր Լուսավորչի տոհմից:

Ապլջահապի որդի Ապիրատից սկզբնավորված այս տոհմաճյուղի ներկայացուցիչները Հայոց կաթողիկոսական աթոռն իրենց ձեռքում պահեցին 90 տարի, մինչեւ Գրիգոր Զ Ապիրատի (1194-1203) աթոռակալությունը[72]: Նրանք իրենց համարում էին Ս. Գրիգոր Լուսավորչի տոհմակիցներ՝ Պահլավունիներ եւ հաջորդաբար բազմում կաթողիկոսական աթոռին տոհմական ժառանգականության իրավունքով: Կաթողիկոսական այս տոհմի անդամներին Ն. Ակինյանն անվանում է «պատվաստված Պահլավունիներ»[73]:

**Գրիգոր Ապիրատի կրտսեր որդին՝ Վասակն** իր որդիների հետ առաջնակարգ դեր ստացավ Անիում հատկապես բյուզանդացիների հեռանալուց հետո, Շադդադյանների տիրապետության շրջանում: 1064 թվականին Անին գրավեց սելջուկ սուլթան Ալփասլանը եւ քիչ անց այն տվեց Աբուլասվարի՝ Աշոտ Դ-ի աղջկանից ծնված որդուն՝ Մանուչեին: Վերջինիս տիրապետության եւ Հասանյաններին քաղաք հրավիրելու մասին ուշագրավ տեղեկություն է պահպանվել Վարդան Արեւելցու պատմության մեջ: Նա գրում է, որ Մանուչեն «...յաւելոյր ի պարիսպն Անւոյ եւ յամրութիւնս նորա. եւ ած ի քաղաքն զամե-

[70] **Ն. Ակինյան**, Ներսես Լամբրոնացի, էջ 380-385:

[71] **Գ. Յովսէփեան**, Յիշատակարանք ձեռագրաց, էջ 422:

[72] Նախ հաջորդաբար Հայոց կաթողիկոս դարձան իշխան Ապիրատի որդիներ Գրիգոր Գ Պահլավունին 1113-1166 թթ. եւ նրա եղբայր Ներսես Դ Կլայեցին (Շնորհալի) 1166-1173 թթ.: Սրանց Վասիլ եղբոր որդին էր կաթողիկոս Գրիգոր Դ Տղան (1173-1193), Վասիլի դստեր որդին էր Գրիգոր Ե Քարավեժ (1194) կաթողիկոսը, իսկ Զորավար եղբոր որդին էր կաթողիկոս Գրիգոր Զ Ապիրատը (1194-1203): Զորավարի դստեր՝ Շահանդուխտի եւ իշխան Օշինի որդին էր Կիլիկիայի հայտնի եկեղեցական գործիչ Ներսես Լամբրոնացին:

[73] «Պատուաստուած Պահլավունիներ» վերնագրի տակ *Ն. Ակինյանը* գրում է. «Պահլաւունիներու արական գիծը շիջաւ Գրիգոր Մագիստրոսի թոռներու մէջ, որոնք չթողուցին ժառանգ: Բայց պահլաւական արիւնը պատուաստուեցաւ ուրիշ իշխանական տուներու, որոնք պարծեցան Պահլաւունի ծագումով: Այդ պատուաստումը կատարուեցաւ միջնորդութեամբ Բջնեցի Գրիգոր Մագիստրոսի երեք դուստրերու, որոնք հարս գացին Ապիրատեանց եւ Թոռնիկեանց» (**Ն. Ակինյան**, Ներսես Լամբրոնացի, էջ 372-373):

*նայն մնացեալ իշխանսն, որպէս եւ **մեծաւ հանդեսիւ ընդ առաջ ելեալ մուծանէր ի ներքս զԳրիգոր զորդին Վասակայ, զթոռն Ապիրատին**. զոր ասեն ունել ի գլուխ ազատականացն հինգհարիւր թագս երեւելիս. զի տէր էր մեծ զօրաց եւ բազում ազատաց: Եւ էր եղբայր տէր Բարսղի, որ զկնի Գէորգեայ ձեռնադրեցաւ ի Հաղբատ կաթողիկոս հրամանաւ եւ կամօք Մանուչէին եւ ամենայն Հայոց: Եւ շինեցաւ քաղաքն Անի ոչ ինչ պակաս քան զառաջինն»[74]:*

*Շատ հնարավոր է, որ այս հատվածը եւս Վարդան Արեւելցին քաղել է Մխիթար Անեցու պատմությունից: Այդ մասին է հուշում նախորդ հատվածի հետ համեմատությունը: Երկու դեպքում էլ պատմիչն օգտագործում է «ասում են թե» արտահայտությունը («զմանէ ասեն», «զոր ասեն»), մեծարական խոսքերով է ներկայացնում Հասանյանների զորությունը (մի դեպքում նշելով տասներկու հազար հեծյալներին, մյուս դեպքում՝ հինգ հարյուր «թագակիր» ազատներին): Նկատենք, որ Մխիթարի ժամանակ Անիի եպիսկոպոսն այս նույն տոհմի ներկայացուցիչ Բարսեղ Բ Անեցին էր: Եւ վերջապես, Անիի կյանքի մասին Մխիթարի պատմությունն էր ամենահավաստի աղբյուրը, որին կարող էր վստահել Վարդան Արեւելցին: Հատվածի ավարտական նախադասությունն էլ դրա հավաստումն է: Մանուչէի ժամանակ Անիի վերաշինումը «ոչ պակաս քան նախկինը», մի պատասխանատու հայտարարություն էր, որ 13-րդ դարում ապրող Վարդան Արեւելցին դժվար թե իրեն թույլ տար, եթե լավատեղյակ աղբյուրից չքաղեր այդ միտքը:*

*Հիշյալ հատվածը մի շարք կարեւոր հանգամանքներ է պարզում: Նախ այն, որ բյուզանդական տիրապետության շրջանում եւ Ալփասլանի սելջուկյան ներխուժումից հետո Վասակն ու նրա որդի Գրիգորը կարողացել են պահպանել իրենց զինական ուժն ու զորությունը[75]: Նրանք նոր պայմաններին հարմարվելով կարողացել են բանակցային ճանապարհով համաձայնության գալ Մանուչեի հետ եւ ընդունելով նրա գերակայությունը Անի վերադառնալ: Դա տեղի է ունեցել Մանուչեի իշխանության անցնելուց կարճ ժամանակ անց, քանի որ արդեն 1072 թ. Վասակի որդին՝ Բարսեղը, Անիում եպիսկոպոս է ձեռնադրվել:*

*Վկայությունից պարզվում է, որ Անի վերադառնալու ժամանակ թեեւ Վասակը ողջ էր, սակայն գուցե ծերության պատճառով, առաջնությունը զիջել էր ավագ որդուն՝ Գրիգորին: Նույն հատվածից երեւում է, որ Բարսեղի կաթողիկոսական ձեռնադրությունը (1081) տեղի է ունեցել նաեւ Մանուչեի կամքով*

---

[74] **Վարդան Արեւելցի**, էջ 108:

[75] Հայտնի է, որ Հայաստանում բյուզանդական տիրապետությունը հատկանշվում էր հայկական զինվորականության կազմալուծման քաղաքականությամբ (Հայ ժողովրդի պատմություն, հ. 3, էջ 434-435):

«հրամանաւ եւ կամօք Մանուչէին»:

Մինչեւ Վասակի որդիներ Գրիգորի ու Բարսեղի գործունեությանը ծանոթանալը անդրադառնանք Բաղաց (Սյունիքի) թագավորության վերջին գահակալներից մեկի՝ Սենեքերիմի սպանության մասին Վարդան Արեւելցու եւ Մխիթար Այրիվանեցու մոտ պահպանված մի տեղեկության, որն առանձին մեկնաբանության կարիք ունի:

Վերը նշված՝ Մանուչէի ժամանակ Հասանյանների Անի գալու մասին հատվածից անմիջապես առաջ Վարդան Արեւելցու մոտ կարդում ենք հետեւյալը. «Ի հինգ հարիւր քառասուն եւ երեք (1094) թուին առաքեաց Փատլուն ամիրայն Գանձակայ զՎասակ Պահլաւ՝ որդի Գրիգորոյ Մագիստրոսի, ամենայն զօրօքն Առանայ յանառիկ յամուրսն Բաղաց եւ Կապանին, որ եւ խաբեութեամբ հնարեալ մտին անդր եւ սպանեալ զՍենեքերիմ արքայն Հայկազնի...»[76]: Սենեքերիմի սպանության մասին ավելի հանգամանորեն պատմում է Ստեփանոս Օրբելյանը, ըստ որի, այն տեղի է ունեցել ոչ թե Վասակի, այլ նրա որդու՝ Գրիգորի հարկադրական մասնակցությամբ (այդ մասին՝ քիչ հետո): Սակայն այս հատվածը հետաքրքրական է նրանով, որ այստեղ Վասակի հայրը՝ Գրիգոր Ապիրատը, ներկայացվում է Գրիգոր Մագիստրոս անունով, ինչպես որ վերը նշված 11-րդ դարի արձանագրություններում: Այս տեղեկությունն Արեւելցին վստահաբար Մխիթար Անեցուց չի քաղել, քանի որ վերջինս, ինչպես տեսանք, իշխանին կոչում է Ապիրատ:

Գրիգոր Մագիստրոս անվան առկայությունն այս հատվածում ոմանց թյուրիմացության մեջ է գցել, ենթադրել տալով, որ խոսքը նույնանուն Պահլավունի (Բջնեցի) իշխանի մասին է, մանավանդ որ Վասակի անվան կից նշված է «Պահլաւ»: Սակայն Գրիգոր Մագիստրոս Պահլավունու Վասակ անունով որդին հեռավոր Անտիոքի դուքսն էր եւ դավադրաբար սպանվել է 1078 թվականին[77]: Հ. Մանանդյանը գրում է. «Վարդանը եւ Մխիթար Այրիվանեցին կարծում են սխալմամբ, որ այս արշավանքի ժամանակ Փատլունի զորավարն էր Գրիգոր Մագիստրոսի որդին՝ Վասակ Պահլավունին»[78]: Սակայն հիշյալ պատմիչները չեն սխալվում, պարզապես նրանց ունեցած սկզբնաղբյուրը Գրիգոր Մագիստրոս նախնական անունով է կոչել Վասակի հորը՝ Գրիգոր Ապիրատին: Իսկ Վասակին նրանք իրավունք ունեին նաեւ «Պահլաւ» կոչելու, քանի որ վերջինիս մայրը Գրիգոր Բջնեցու դուստրն էր: Սխալմունքը միայն նրանում է, որ հիշյալ դեպքերի մասնակիցը ոչ թե Վասակն էր (նա այդ ժամանակ առնվազն

[76] **Վարդան Արեւելցի**, էջ 108:

[77] **Լ. Տեր-Պետրոսյան**, Խաչակիրները եւ հայերը, հ. Ա, Երեւան, 2005, էջ 418-419:

[78] **Հ. Մանանդյան**, Երկեր, հ. Գ, Երեւան, 1977, էջ 88, **Հ. Աճառյան**, Հայոց անձնանունների բառարան, հ. Ե, էջ 50:

90-ամյա ծերունի կլիներ), այլ նրա որդին՝ Գրիգորը:

### Վասակի որդիները՝ իշխան Գրիգոր եւ Բարսեղ Ա կաթողիկոս

Վասակը ունեցել է չորս որդի՝ Գրիգոր, Բարսեղ, Հասան, Ապլջահապ: Ինչպես վերը տեսանք, սրանցից առաջինը հիշվում է պապի անունով անվանակոչված Գրիգորը, որի գլխավորությամբ Հասանյանների այս ընտանիքը Անի է վերադարձել Մանուչե ամիրայի հրավերով: Երկրորդ հիշատակվողը Բարսեղն է, որը Անիի եպիսկոպոս է դարձել 1072 թվականին, իր մորեղբոր՝ կաթողիկոս Գրիգոր Վկայասերի կամքով. «...Տէր Գրիգորիս (Վկայասերը – Կ. Մ.) գնացեալ ի մայրաքաղաքն Հայոց, որ կոչի Անի, եւ անդ ձեռնադրեաց եպիսկոպոս զԲարսեղն՝ զքեռորդին իւր՝ զորդի Վասակայ, որդւոյ Ապիրատին, որդւոյ Հասանայ»[79]:

Դրանից շատ չանցած՝ 1081 թ. Գրիգոր Վկայասերի համաձայնությամբ Բարսեղը Հաղբատում հանդիսավորապես ձեռնադրվում է Հայոց կաթողիկոս ու փառավոր երթով ուղեւորվում Անի, որի մուտքի մոտ նրան դիմավորում են իր ազգակիցներն ու ցնծացող ժողովուրդը. «...ի վանքն, որ կոչի Հաղբաթ, ձեռնադրեցին զտէր Բարսեղ կաթուղիկոս յաթոռ սրբոյն Գրիգորի՝ ի վերայ ամենայն աշխարհին Հայոց... Յայսմ ժամանակի նորոգեալ եղեւ աթոռ սրբոյն Գրիգորի ի քաղաքն Անի... Եւ ելեալ գայր Բարսեղ կաթուղիկոսն Հայոց ի թագաւորաբնակ քաղաքն Անի, եւ ելեալ ամենայն Տունն Շիրակայ գնալ ընդ առաջ նորա, **եւ ահա գայր Վասակ՝ հայրն տէր Բարսղի եւ եղբարք նորա՝ Հասան եւ Գրիգոր եւ Ապլջահապ, արք քաջք եւ հզօրք՝ հանդերձ եպիսկոպոսօք, եւ նստուցին զտէր Բարսեղ յաթոռ տեառն Պետրոսի**: Եւ եղեւ օրն այն օր մեծ եւ ուրախութիւն ամենայն Տանն Հայոց, վասն զի տեսին նորոգեալ զաթոռ հայրապետութեանն ի քաղաքն յԱնի»[80]:

Այստեղ ուշադրության է արժանի ոչ միայն Բարսեղի տոհմակիցների թվարկումը, այլեւ այն, որ պատմիչն Անիի աթոռը համարում է քաղաքից հեռացած վերջին կաթողիկոս Պետրոսի (Գետադարձ) աթոռը:

Մինչեւ Գրիգոր Վկայասերի մահը՝ 1105 թ., Բարսեղ Ա Անեցին համարվում է նրա աթոռակիցը, որից հետո՝ մինչեւ 1113 թ.՝ միանձնյա կաթողիկոս, թեեւ ձեռնադրությունից անմիջապես հետո նա իր ձեռքն է վերցնում կաթողիկոսական վարչական իշխանությունը:

Հայաստանյայց եկեղեցու ընդհանուր վիճակն այդ ժամանակ աննախա-

---

[79] **Ուռհայեցի**, էջ 226, Սմբատ Սպարապետ, էջ 82:

[80] **Ուռհայեցի**, էջ 236-238:

*դեպ էր, առաջացել էին մի քանի հակաթոռ կաթողիկոսություններ[81]: Բարսեղ Անեցին Կաթողիկոսական աթոռն ամրապնդելու եւ եկեղեցու դրությունը բարվոքելու համար* ***1090 թ.*** *մեծ պատվիրակությամբ ուղեւորվում է սելջուկյան պետության տիրակալ Մելիքշահի մոտ, նրանից ստանում անհրաժեշտ արտոնություններ, որոնք շուտով գործադրում է հակաթոռ կաթողիկոսությունների դեմ[82]: Ինչպես Սամվել Անեցու Ժամանակագրության լրացնողներից մեկն է գրում, Բարսեղը հնազանդեցնում է «զամենայն հակառակսն»[83]:*

*Բարսեղ Անեցու գործունեությունը բավական լավ է ուսումնասիրված[84], ուստի այստեղ դրան չենք անդրադառնում: Նշենք միայն, որ մինչ Բարսեղը Անիում քայլ առ քայլ ամրապնդում է եկեղեցու դիրքերը, վերականգնում կաթողիկոսարանի դպրոցը, այն հանձնելով ժամանակի նշանավոր վարդապետ Հովհաննես Սարկավագին[85], հոգ տանում ժողովրդի հոգեւոր կորովը պահպանելու մասին[86], նրա եղբայր Գրիգոր իշխանն իր զինվորական ծառայությունն էր կատարում Շադդադյանների մոտ՝ երբեմն հարկադրված լինելով գործել նաեւ իր հայրենակիցների դեմ:*

*Ստեփանոս Օրբելյանը Բաղաց թագավորության կործանմանն անդրադառնում է երկու անգամ, հակառակ հերթականությամբ: Նախ «Սյունիքի թագավորները» բաժնում (գլ. ԾԹ) պատմում է Սենեքերիմ թագավորի սպանության մասին (շուրջ* ***1094 թ.****), իսկ ավելի ուշ, Կապանի գրավման եւ թագավորության անկման բաժնում (գլ. ԿԱ) տեղեկացնում է, թե ինչպես էր Սենեքերիմը, մի հարցում խոստումնազանց լինելով, մահմեդականների թշնամությունը հարուցել[87]:*

---

[81] Մ. Օրմանյանը գրում է. «Այս շփոթ կացութեան մէջ Բարսեղն էր միայն, որ իրաւ հայրապետական պաշտօն կը վարէր, իր հօտին հոգածութիւնն ունէր եւ անոր ներքին եւ արտաքին պէտքերը լրացնելու կ՚աշխատէր: …Իր մօրեղբօր (Գրիգոր Վկայասէրի - Կ. Մ.) բարեացակամութենէն օգտուելով եւ անոր ձեռնթափ վիճակին դատարկը լրացնել փափաքելով, համարձակ կընդլայնէր իր ձեռնարկները…» (**Մ. Օրմանյան**, Ազգապատում, հ. Ա, Ս. Էջմիածին, 2001, էջ 1536):

[82] **Ուռհայեցի**, էջ 256-258:

[83] **Անեցի**, էջ 117:

[84] **Մ. Օրմանյան**, Ազգապատում, էջ 1506-1576, Կ. Մաթեւոսյան, Անի, էջ 47-58:

[85] **Կ. Մաթեւոսյան**, Հովհաննես Սարկավագի գործունեությունն Անիում. – «Էջմիածին», 2005, Է-Ը, էջ 59-72:

[86] Վարդան Արեւելցու վկայությամբ 1094 թ. մեծ հանդիսավորությամբ Անի է բերվում մի նշանավոր սրբություն՝ Նունեի խաչը, որը Հայաստան էր տեղափոխվել դեռեւս Սահակ Պարթեւի ժամանակ, պահվել տարբեր տեղերում: Այն Անի բերելով՝ Բարսեղ կաթողիկոսն այստեղ դրա համար հատուկ տոն է սահմանում (**Վարդան Արեւելցի**, էջ 115):

[87] **Ստեփանոս Օրբէլեան**, Պատմութիւն նահանգին Սիսական, Տփղիս, 1910, էջ 332-333, **Ստեփանոս Օրբելյան**, Սյունիքի պատմություն, թարգմանությունը եւ ծանոթագրությունները *Ա. Աբրահամյանի*, Երեւան, 1986, էջ 277-278:

Օրբելյանը գրում է, որ Մելիքշահի մահից հետո, Գանձակի ամիրան Սենեքերիմին պաշարում է բերդում: Ամիրայի հետ էր «Շիրակայն իշխանն՝ Գրիգոր Ապիրատեան»[88]: Տեսնելով բերդի անմատչելիությունը ամիրան Գրիգորին ուղարկում է Սենեքերիմի մոտ, համոզելու, որ իր մոտ գա, որից հետո նրան պարգեւներով ազատ կարձակի, իհարկե, չմոռանալով Գրիգորին սպառնալ, որ եթե Սենեքերիմին չբերի, կյանքից կզրկվի: Գրիգորը բերում է Սենեքերիմին, ամիրան դրժում է խոստումը, սպանում թագավորին եւ թողնում հեռանում է իր երկիրը: Սենեքերիմի որդիները, Սյունյաց մեծամեծերը գալիս սգում են թագավորի կորուստը եւ նրա դին տանում են հողին հանձնում Վահանավանքում[89]: Սյունյաց գահը ժառանգում է Սենեքերիմի որդի Գրիգորը:

Հաասանյան Գրիգոր իշխանի վարքն այս պատմության մեջ պայմանավորված էր նրա ծառայության բնույթով: Նա իր զորականներով պետք է ծառայեր Անիի ամիրային, եւ հենց այդ պարտականությունը կատարելիս էլ, որոշ ժամանակ անց, զրկվեց կյանքից:

Վարդան Արեւելցին պատմելով Գրիգորի մահվան մասին (1099 թ.), նրան ներկայացնում է որպես քաջ պատերազմող, միաժամանակ ցույց է տալիս նրա վայելած մեծ հեղինակությունը: Արեւելցին, մեր կարծիքով, Մխիթար Անեցու պատմությունից օգտվելով, գրում է. «...ազգ մի սկիւթական, որ ի վաղեաց ժամանակաց ղօղեալ կեայր առ Վրկանօք, անուն գլխաւորին Ելխազի կոչեցեալ, որ եկն եօթն հազարաւ ընդ միջոցս աշխարհի մինչեւ յԱնի քաղաք պատերազմաւ. եւ մեռաւ անդ եղբայր նորա, որ նման էր Գողիադու հսկայի, ի Գրիգորոյ որդւոյ Վասակայ, թոռին Ապիրատին, որ զկնի աւուրց նահատակեցաւ ի Կաղզուանն, զերծուցեալ ի մահուանէ զամիրայն Անւոյ զՄանուչէ. եւ տարեալ թաղեցին զնա ի Կեչառուս. եղբայր Տէր Բարսղի կաթողիկոսի. եւ Մանուչէ եւ ամենայն զօր բանակին Հայոց զկնի դիոյն»[90]:

Գրիգոր իշխանի հանդիսավոր հուղարկավորությունը Կեչառիսում վկա-

---

[88] **Ստեփանոս Օրբէլեան**, Պատմութիւն նահանգին Սիսական, էջ 320:

[89] Նույն տեղում, էջ 320-321, **Ստեփանոս Օրբելյան**, Սյունիքի պատմություն, էջ 270:

[90] **Վարդան Արեւելցի**, էջ 113-114, աշխարհաբարը՝ էջ 153: Ներկայացնում ենք այս հատվածի մեր կատարած աշխարհաբար թարգմանությունները, քանի որ հրատարակության մեջ եղած թարգմանության մեջ կան իմաստային զգալի շեղումներ բնագրից (տե՛ս **Կ. Մաթեւոսյան**, Վարդան Արեւելցին Անիի պատմության մասին. – «Էջմիածին», 2002, էջ 92-95). *«...Սկյութական մի ցեղ, որ վաղ ժամանակներից աննկատ ապրում էր Վրկանից աշխարհի մոտ, որի առաջնորդի անունը Ելխազի էր, յոթ հազար հոգով, պատերազմելով (Հայոց) աշխարհի միջով գալիս է մինչեւ Անի քաղաքը, եւ այդտեղ նրա եղբայրը, որ նման էր հսկա Գողիաթին, սպանվում է Վասակի որդի եւ Ապիրատի թոռ Գրիգորից, որը օրեր անց նահատակվում է Կաղզվանում, մահից փրկելով Անիի ամիրա Մանուչեին, եւ նրան՝ Բարսեղ կաթողիկոսի եղբորը՝ տանում թաղում են Կեչառիսում եւ դիակի հետեւից գնում էին Մանուչեն եւ հայոց բանակի ամբողջ զորքը»:*

*յում է, որ Գրիգոր Ապիրատի հիմնադրած այդ վանքը նրա որդի Վասակի տոհմաճյուղի հանգստարանն էր։*

*Գրիգորի մահվան մասին փոքր ինչ այլ կերպ է պատմում Մատթեոս Ուռհայեցին։ Նախ իշխանին կոչում է «Գրիգոր կուրապաղատ արեւելից», ապա նշում, որ նա զորքով գնաց Կաղզվան, այնտեղ պարտության մատնեց թուրքերին, որից հետո Անի վերադառնալու ճանապարհին սպանվեց դրանակալ մի թուրքի արձակած նետից. «...դարձեալ գնալով ի քաղաքն Անի, յայնժամ մի ոմն ի դարանի կայր ի Թուրք զորացն ընդ ծառով միով, եւ գաղտ նետիւ հարեալ զնա ի բերանն եւ ի սաստիկ խոցոյն ի յերկիր անկեալ աւանդեաց զհոգին, եւ եղեւ սուգ մեծ Շիրակայ եւ ամենայն տանն Հայոց»[91]։*

*Այսպիսով Արեւելցին եւ Ուռհայեցին միմյանց լրացնելով ներկայացնում են Գրիգորի մահվան հանգամանքները։ Զարմանալի է, բայց փաստ, որ Վասակի ավագ որդու՝ Գրիգորի սպանությունից շուրջ մեկ տասնամյակ անց (մոտ. 1110 թ), Վասակի եղբոր՝ Ապլջահապի ավագ որդու՝ Ապիրատ իշխանի սպանությունը տեղի է ունեցել ճիշտ նույն ձեւով՝ դրանակալ թշնամուց նետահարությամբ, որը պատկերավոր կերպով նկարագրել է նրա որդին՝ Ներսես Շնորհալին[92]։*

*Կարծես թե ճակատագրական մի բան կա այս տոհմի պատմության մեջ, սկսած Գրիգոր եւ միաժամանակ Ապիրատ առեղծվածային անունով անհայտ մեկի, միանգամից մագիստրոսի պատվաստիճանով պատմական թատերաբեմ իջնելուց, նրա եղերական մահից, մինչեւ նրա անուններով անվանակոչված ավագ թոռների՝ Գրիգորի եւ Ապիրատի նույնանման սպանությունը։ Ակամա այդ տխուր օրինաչափությունների շարունակողը եղավ նաեւ Գրիգոր իշխանի եղբայրը՝ Բարսեղ Ա Անեցին, որը կաթողիկոսի համար անսովոր վախճան ունեցավ։ 1113 թ. մայիսին նա զոհ գնաց մի դժբախտ պատահարի, անսպասելիորեն փլված շենքում մահացու վիրավորվելով։ Սակայն մինչեւ մահկանացուն կնքելը Բարսեղը հասցրեց կատարել 1105 թվականին մահվան մահճում գտնվող Գրիգոր Վկայասերին տված խոստումը[93] եւ Ապիրատ իշխանի որդուն՝*

[91] **Ուռհայեցի**, էջ էջ 288-289։

[92] Շնորհալին գրում է, որ այն օրը, երբ իր եղբայրը քահանայական ձեռնադրության արժանացավ, եւ իրենք ուրախության մեջ էին, գույժ ստացան իրենց հոր մահվան մասին, որը տեղի էր ունեցել Ծովք ամրոցում, հետեւյալ կերպ. «Թագնաբար անդ դարանեալ, / Հագարացի ոմն նստեալ, / Ըզլայնալիճն լի քարշեալ, / Թէ երբ նայի դետակն առեալ։ / Յորժամ ետես ունայնացեալ, / Ի վահանէն, որով ծածկեալ, / Եռեքթեւեան եռաթունեալ, / Յանկարծակի ըզնա հարեալ... / Եւ զյաղթանդամն ջախջախեալ...» (Ներսեսի Շնորհալւոյ Բանք չափաւ, էջ 602-603)։

[93] Բարսեղն Անիից Քեսուն է գալիս Գրիգոր Վկայասերի կանչով, լսում նրա վերջին կամքը, ըստ որի Բարսեղից հետո Հայոց կաթողիկոս պիտի ձեռնադրվեր Վկայասերի քրոջ թոռը՝ Գրիգորը, որն այդ ժամանակ մանուկ էր։ Երբ 1105 թ. Բարսեղը դառնում է միանձնյա

15 կամ 17 ամյա Գրիգորին եպիսկոպոս ձեռնադրել: Բարսեղի մահից մի քանի օր հետո, նրա պատգամի համաձայն, Գրիգորը ձեռնադրվեց կաթողիկոս (Գրիգոր Գ Պահլավունի) եւ շարունակեց «Պահլավունյաց» կաթողիկոսական տոհմը:

Հասանյանները որպես աշխարհիկ եւ հոգեւոր առաջնորդներ լայն գործունեություն են ունեցել Անիում նաեւ 12-րդ դարում[94], որն առանձին քննության նյութ է:

Ամփոփելով կարող ենք ասել, որ հայտնի եւ նորահայտ նյութերի շնորհիվ ուրվագծվում է Անիի Բագրատունյաց թագավորության իշխանական տներից մեկի սկզբնավորման պատմությունը: Քեղի ամրոցի իշխան Հասանի ավագ որդին՝ Գեւորգը ժառանգել է հոր իշխանությունը, միաժամանակ 1002 թ. կառուցել է Հավուց Թառի Կաթողիկե եկեղեցին, իսկ կրտսեր որդին՝ Գրիգոր Ապիրատն իր խելքով եւ ձեռներեցությամբ կարողացել է ավելի մեծ դիրքի հասնել, արժանանալ մագիստրոսության պատվաստիճանի եւ «մեծ իշխան» հորջորջման: 1003 թ. Գրիգոր Ապիրատը կառուցել է Կեչառիսի Ս. Գրիգոր մեծադիր եկեղեցին: 1021 թ. Բագրատունի Հովհաննես Սմբատ եւ Աշոտ Դ եղբայրների միջեւ ծագած գահակալական կռիվներից հետո, Աշոտի լարած խարդավանքի ժամանակ հրաժարվելով թագավորասպան դառնալուց, Գրիգոր Ապիրատն ընտանիքով ապաստանել է Դվինի ամիրայի մոտ, սակայն այստեղ դավադրաբար սպանվել է: Նրա ընտանիքը տեղափոխվել է Անի, ուր Հովհաննես Սմբատ թագավորն ստանձնել է մահացած իշխանի զավակների խնամակալությունը: Գրիգոր Ապիրատի դուստրը կնության է տրվել Վեստ Սարգիս իշխանին, իսկ որդիները՝ Ապլջահապը եւ Վասակը կնության են առել Գրիգոր Պահլավունի (Բջնեցի) իշխանի երկու դուստրերին: Առաջինի ընտանիքը 1045 թվականից հետո բյուզանդական ծառայության անցած եւ մագիստրոս դարձած Գրիգոր

---

աթոռակալ, նրա առաջ բարձրանում է աթոռանիստ տեղի խնդիրը. վերադառնալ Անի, թե՞ մնալ Քեսունի շրջանում: Բարսեղը որոշում է մնալ, որից դժգոհ են մնում Հայաստանում: Գրիգոր Դարանաղեցին գրում է, որ «յորժամ հեռացաւ Տէր Բարսէղն… ի յԱնւոյ», դրանից դժգոհեցին «մեծամեծ հոչակաւոր վանորէից եպիսկոպոսքն»: Հետաքրքիր է, որ նրա թվարկած հինգ վանքերից երկուսը Հասանյան տան հոգեւոր կենտրոններն էին՝ Կեչառիսը եւ Հավուց թառը (Ժամանակագրութիւն Գրիգոր վարդապետի Կամախեցւոյ, Երուսաղեմ, 1915, էջ 303):

[94] Անիի Հասանյանների մասին տե՛ս **Ն. Ակինյան, Ներսես Լամբրոնացի**, էջ 394-397, **Հ. Մարգարյան**, Հյուսիսային Հայաստանի եւ Վրաստանի…, էջ 102, 120, 155-156, 166, **Կ. Մաթեւոսյան**, Անի, էջ 62-82, 116-120: Մեր կարծիքով՝ Հասանյանների տոհմից է եղել նաեւ Մաղարդավանքի առաջնորդ Գրիգորիսը, որը հիշվում է «էջմիածնի Ավետարանի» 1173 թ. հիշատակարանում եւ մեկ այլ ձեռագրի անթվական հիշատակարանում, ուր անվանվում է «Գրիգորէս, որդի Ապիրատին»: Հետաքրքիր է, որ այդ ձեռագիրը Մաղարդավանքին նվիրողը բնակվում էր «մերձ առ դղեկին Քեղայոյ» (Հայերեն ձեռագրերի հիշատակարաններ, Ե-ԺԲ դդ., էջ 213, 312):

*Պահլավունու հետ տեղափոխվել է հարավ՝ Միջագետք Հայոց, վայելելով նրա ու 1065-ին կաթողիկոս դարձած նրա որդու՝ Գրիգոր Վկայասերի հովանավորությունը: Այս ընտանիքի անդամներն ու ժառանգները մայրական գծով Պահլավունի լինելու շնորհիվ Հայոց եկեղեցուն հաջորդաբար հինգ կաթողիկոս են պարգեւել: Իսկ Վասակի ընտանիքը մնացել է Անիում եւ այստեղ առաջնակարգ դիրք գրավել Շադդադյանների տիրապետության շրջանում:*

*Վերջում զետեղում ենք Հասանյանների տոհմածառը, որը լրացնում է նախկինում Ն. Ակինյանի կազմածը*[95]*:*

[95] **Ն. Ակինյան,** Ներսես Լամբրոնացի, ներդիր 402-403 էջերի միջեւ: Ն. Ակինյանը Հասանյանների տոհմածառի ստորին մասում զետեղել է 12-րդ դարի վերջերին եւ 13-րդ դ. սկզբում Շիրակում հայտնված մի տոհմի անդամների անունները, ոմն Ապուղամրի գլխավորությամբ, որի զավակներն իրենց համարում էին սպարապետ Վահրամ Պահլավունու սերունդ եւ այդ մասին արձանագրություն ունեն Մարմաշենում: Այս տոհմը կապ չունի Հասանյանների հետ (**Կ. Մաթեւոսյան**, Անի, էջ 76): Նույն տոհմածառում որպես Ապլջահապի որդի Վասակի որդիներ են նշվում Ապլղարիպը եւ Լիկոսը (նույն տեղում, էջ 384-385), որոնք իրականում Գրիգոր Մագիստրոս Բջնեցու Վասակ որդու զավակներն են (**Լ. Տեր-Պետրոսյան**, Խաչակիրները եւ հայերը, հ. Ա, էջ 423): Մենք ավելացրել ենք տոհմապետ Հասանի որդի Գեւորգ իշխանի ճյուղը, 12-րդ դարում ապրած Հասան Մագիստրոսի եւս մի որդու եւ փեսայի անունները (Մանր ժամանակագրություններ, հ. 2, էջ 502), կիլիկյան տոհմաճյուղում՝ Գրիգոր Դ Տղա կաթողիկոսի քրոջը, որի ամուսինն էր Կիլիկիայի Հայոց իշխան Մլեհը (**Լ. Տեր-Պետրոսյան**, Խաչակիրները եւ հայերը, հ. Բ, էջ 152), միաժամանակ յուրաքանչյուր գործչի անվանը կից նշել ենք նրա հիշատակության թվականները (կաթողիկոսների դեպքում՝ աթոռակալության տարիները):



Հասան
Գրիգոր Ապիրատ Մագիստրոս 1001, 1003, +1021
Գեւորգ 1002
Դուստր Տիկնաց, 1042 անուսինը՝ Վեստ Սարգիս
Ապլջահապ կինը՝ Գրիգոր Մագիստրոս Պահլավունու դուստրը 1021
Վասակ կինը՝ Գրիգոր Մագիստրոս Պահլավունու դուստրը 1021, 1081
Հասան (ենթադրյալ)
Վասակ +1137
Վահրամ +1141
Ապիրատ + 1110 (մոտ.) կինը՝ Վանենի
Գրիգորիս կթղ. եգիպտոսում
Բարսեղ Ա Անեցի կթղ. 1081-1113
Գրիգոր Կուրապաղատ 1181, +1099
Հասան 1081
Ապլջահապ 1081
Սմբատ 1081
Զորավար
Դուստր Մարիամ
Վասիլ 1149 կինը՝ Մարեմիկ
Ներսես Դ Շնորհալի կթղ. 1166-1173
Գրիգոր Գ Պահլավունի կթղ. 1113-1166
Հասան մագիստրոս
Հասան 1081
Վասիլ
Միքայել
Գրիգոր Զ Ապիրատ կթղ. 1194-1203
Դուստր Թագուհի անուսինը՝ Բակուրան
Դուստր Շահանդուխտ անուսինը՝ Օշին
Գրիգոր Դ Տղա կթղ. 1173-1193
Դուստր
Գրիգոր Ե Քարավեժ կթղ. 1194
Դուստր անուսինը՝ Սլեհ
Դուստր Վանինե անուսինը՝ Չորտուանել
Բարսեղ Բ Անեցի Անիի արքեպս. 1160, 1199
Գրիգոր-Ապիրատ 1165,1178
Ապլղարիբ 1178
Դուստր անուսինը՝ Անիր Հասան
Սարգիս Ա Անիի արքեպս. 1187, 1220